

# ՄԱՅԻՍՅԱՆ ԵՐԳ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Մայի՛ս, կարմի՛ր մայիս,
Հաղթանակի՛ մայիս,
Խաղաղության, սիրո
Ու սխրանքի ամիս:

Քո ծաղկունքից շատ են
Երազները մեր վառ,
Քո վարդերից վառ են
Դրոշները մեր ալ:

Մայի՛ս, կարմի՛ր մայիս,
Հաղթանակի՛ մայիս,
Երջանկության, երգի,
Երազանքի մայիս:

*Լուսանկարը՝*
*ԶԱՎԵՆ ԲԵՏԻԿՅԱՆԻ*

Երկար գազոնը փողոցը կիսում է երկու մասի, և անցորդներից երևի շատերը նրա նման նկատել էին, որ գազոնի ծայրում՝ բրոնզե սյան վրա, ամրացված է երթևեկությանը նպաստող հայելի-կարգավորիչը: (Երբեմն նա կասկածում է՝ իրո՞ք դա հայելի-կարգավորիչ է կոչվում): Խաչմերուկը հատելիս նա մի անհնարին քայլքով դանդաղեցնում է, և այդ ժամանակ աչքին ընկնում է ամենաշատ հայելում մեջ ... երևում են ավտոմեքենաները: Այդ կետ, աշխատանքին «զգաստության» խորքում նա ալենքի խառնաշփոթ է տեսնում, որ գիտակցությունից խուսափելու համար անցորդները քայլում էին նրա հետ կողք-կողքի և կարծես շարժվող էլևատորի վրա լինեին: Ի՞նչ անել՝ վերցնե՞լ գետնից: Ուրքով ճանապարհից դեպի գազո՞նը հրել:

Խաչմերուկում, տռուցիկ հայելու մեջ, սպանում էին ավտոմեքենաները, շտապում էին անցորդները, և նա, պատահարից խուսափելու համար, ոչինչ չընձեռնարկած՝ հեռվից դիմացի մայթը:

Եվ նայից չարժեր: Նա վշտացած շարունակեց ճանապարհը:



Մոնա Լիզա: Հրաշք կին իր չափերով ոչ մեծ մի դիմանկար,



# ԳԵՐԲՆԱԿԱՆ ՈՒԺԸ

*ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

դեմքն արագ շրջում է: Այդպիսի պահերին նրա մտքով անցնում է ծանոթ փարոսներից մեկնումեկին հարցնել, թե ինչպես են դրանից գլուխ հանում, բայց խաչմերուկն անցնելուն պես մոռանում է և՛ հարցնելու գոյությունը, և՛ իր մտադրությունը:

Բայց ահա մի օր, այդ խաչմերուկում նրա հետ արտասովոր դեպք պատահեց: Կարծես գերբնական մի ուժ նրա հայացքը քաշեց հայելուց և գամեց ասֆալտին, որի վրա ընկած էր եզրերը ծալծլված ու կեղտոտված մի թուղթ:

Դա գրքի կամ տետրի մի էջ չէր և ոչ էլ թերթից պոկված մի կտոր:

Դա ալբոմի մեծադիր էջ էր և նրա վրա՝ Լեոնարդո դա Վինչիի «Ջոկոնդա» դիմանկարը:

Նրա սիրտը ցավագինորեն ճըմլվեց:

Խաչմերուկը մարդաշատ էր, որի գերբնական ազդեցությամբ մարդիկ հնազանդվում են և նրանից բաժանվելու պահին գլուխները խոնարհում նրա առաջ:

Մոնա Լիզա: Իտալացի հանճարեղ նկարչի գլուխ-գործոցը, առավելագույն ժպիտը դեմքին: Գեղեցկության ու մաքրության խորհրդանիշը՝ ստեղծված բոլոր ժամանակների համար:

Ճակատը պայծառ, մազերը երկնային, ձեռքերը նուրբ, որոնցից բարություն և հանդարտություն է բուրում: Ձեռքերը նուրբ, ջերմությամբ թաթավուն և դաստակներն ամփոփված թավշի ու լույսի ճառագայթներով:

Մոնա Լիզա՝ աշխարհին հայտնի «Ջոկոնդա» անվամբ, որ հինգ հարյուր տարի իր գեղեցկությամբ ապշեցնում է մարդկանց: Եվ նրա շուրջը հյուսվում են լեգենդներ: Եվ մարդիկ ոսկեզօծ շրջանակի մեջ թաքնված գաղտնիքը պարզելու համար նորից ու նորից վերադառնում են այն ժամանակները, երբ նկարիչը, ցանկանալով թափանցել բնության գաղտնիքների մեջ, որոշում է կտավի վրա ստեղծել մարդու շնչող, ապրող, ժպտացող կերպար, որ նրա մաշկը թրթռուն լինի, աչքերում՝ խոնավ փայլ. և թվա, որ այնքա՞ն հաճելի ժպիտը խաղում է ում որ է իրարից հեռացող շրթունքների վրա:

...Սեղանին թափված են գրքեր, թերթեր, ալբոմներ, իսկ նա չի նայում նրանց:

Անբացատրելի մի զգացմամբ համակված՝ նա նայում է մի կետի, երբ հնչում է դռան զանգը:

Ընկերն է՝ դաշնակահար Լեվոնը: Մոսկվայից նոր է վերադարձել:

— Ի՞նչ նորություն,— ի միջի այլոց հարցնում է նա:



# ԳՈՏԵՊՆԴՎԻ՛Ր, ՏՂԱ՛Ս

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ



Նկ. ՅՈՒԼԻԱ ՂԱՆԴԻԿՅԱՆԻ

Անձրևը չի լացում,
Միծաղում է, տղա՛ս,
Չե՞ս հավատում, հարցրո՛ւ
Ծաղիկներին ծլած:
Ամպը որոտ չունի,
Ունի երգ ու նվագ,
Ենփորում է նա միշտ
Գարնանային հավաք:
Բարեկամ է քամին,
Չվախենաս երբեք,

Նա ուզում է, որ մենք
Խիզախություն երգենք:
Ամպրոպի՛ հետ խոսիր,
Եվ ամպրոպվի՛ր, տղա՛ս,
Քամու ե՛րգը լսիր,
Գոտեպնդվի՛ր, տղա՛ս:
Ծաղիկն ամենավառ
Հենց այնտեղ է աճում,
Որտեղ գարնան զվարթ
Ամպրոպներն են շաչում:

---

— Ցուցահանդես մտնելու համար տասը ժամ ներս եմ կանգնել:

— Ի՞նչ ցուցահանդես:

Լևոնը կարծես հարցը չի լսում, շարունակում է.

— Տասը ժամում սանտիմետր առ սանտիմետր առաջ շարժվեցինք, չնկատվող քայլերով մոտեցանք և իմ բախտը բերեց. ես հայտնվեցի հանճարեղ դիմանկարի առաջ. ինձ ժպտաց Լեոնարդո դա Վինչիի Մոնա Լիզան:

Դաշնակահարը նկատում է, որ ընկերը հիացած նայում է իրեն, շարունակում է.

— Ես կանգնեցի նկարի առաջ ու ինձ թվաց, որ այլևս տեղիցս չեմ կարողանա շարժվել,— և ապա ցածր ձայնով.— Ինձ վրա կենդանի էակի հայացք զգացի: Այդ ժամանակ կողքից մեկը հրվեց թեխս՝ ասելով «առաջ անցեք»: Եվ ես քայլեցի, աչքերս չկտրելով նկարից և դարձյալ զգացի, որ դիմանկարից հայացքը ուղեկցում է ինձ:

Նա մագնիսացածի նման լսում է ընկերոջը: Նա այնպիսի բան էր տեսել, հաղորդակցվել այնպիսի գերբնական երևույթի, որի լույսից կարծես մնացել էր նրա վրա:



Անցավ մի քանի օր: Նա միայնակ հեռուստացույց էր դիտում: Մոսկվայի հաղորդավարը պատմում էր, թե Մոնա Լիզայի դիմանկարն ինչ զգուշությամբ են Փարիզից տեղափոխել Ճապոնիայի Տոկիո քաղաքը, որտեղ միլիոնավոր ճապոնացիներ սիրով ու քնքշանքով դիտել են նկարը: Ապա, տունդարձի ճանապարհին, «Ջոկոնդան» մի փոքր դադար է առել Մոսկվայում: Հաղորդավարը չի մոռանում ասել նաև, որ Լեոնարդո դա Վինչիի ստեղծագործությունը կրող օդանավին ուղեկցում էր օդանավերի մի ամբողջ «պահակախումբ»:

Եվ ապա էկրանի վրա երևում է թանգարանի շենքը, հետո այցելուների երկար շարանը, իսկ հետո հրաշքի պես հայտնվում է կանացի չքնաղ դեմքը: Կարծես սենյակը փոխվում է, զվարթանում, ողողվում բարությամբ, մեղմությամբ: Կարծես/ սենյակի իրերը նույնպես փոխվում են, նոր տեսք ստանում ու լույսով ճառագայթում: Այդ զգացումն այնքան իրական է թվում, որ իրենից անկախ նա շրջվում է և հիացմունքով չորս կողմը նայում:

Վայրկյանները անցնում են, ժապավենը սահում է և էկրանի վրա երևում են այցելուների հմայված դեմքերը՝ նրանց, որոնք արժանացել էին մեծ բախտավորության և հենց այդ պահին հաղորդակցվում էին արվեստի գլուխ-գործոցի հետ:





# ՀԱՄԵՆԱՅՆԴԵՊՍ...

ԱՂԱՎՆԻ

Շողեր տատիկս, Նանար, Քնար քույրիկներս, Ալատ եղբայրս, որին նաև Գուշո էինք ասում, վերջինն էլ ես: Վերջինը լինել չէի ուզենա, բայց տատիկի դրած կարգն էր:

— Մեջների մեծն ես, ուրեմն վերջինը պիտի լինես, կարգն էդպես է:

Տատիկն իմ այս վերջինը լինելը հիշում էր միշտ այն դեպքերում, երբ տանը որևէ համով բան էր հայտնվում, բայց ոչ այնքան, որ ամեն մեկս մեր ուզածի չափով վերցնեինք, այլ՝ քիչ-քիչ: Ասենք թե մի բուռ չամիչ, մի քիչ փշատ, մի քանի հատ կոնֆետ: Այն էլ ասեմ, որ այս համով բաները բերում էր Մաքրուհի դուդուն:

Այս Մաքրուհի դուդուն փոքր ժամանակ գաղթել էր իրենց Վան քաղաքից: Մեն-մենակ, ճամփաներին թափառելով՝ եկել, եկել, հասել էր Երևան և ուղիղ գնացել իմ տատենց տունը:

Հասկանալի է, որ այն ժամանակ իմ տատը դեռ Շողեր տատ չէր, այլ՝ փոքրիկ մի աղջիկ: Եվ, ուրեմն, փոքրիկ աղջիկ իմ Շողեր տատը մի օր էլ իրենց դռանը կծկված տեսնում է մի ուրիշ փոքրիկ աղջկա: Հարցնում է, թե ո՞վ ես, Մաքրուհին եմ, ասում է նա: Ո՞րտեղից ես եկել, նա թե՝ մեր Վանա քյաղքեն: Ո՞վ ունես, ի՞նչ ունես, մարդ էլ չէ, ես մենակ եմ: Լսի՛ր, Մաքրուհի աղջիկ, ասում է տատս, մնա մեր տանը, ինձ քույր դարձիր, ուզո՞ւմ ես: Ապա ինչպե՞ս, ուրախանում է Մաքրուհին ու մնում է, դառնում տատիկիս քույրը: Ապրում են սիրով ու համերաշխ, հետո երկուսն էլ մեծանում դառնում են հարս: Միաժամանակ էլ այդպես են ապրում՝ Մաքրուհի հարս, Շողեր հարս: Հետո էլ կամաց-կամաց մեկը դառնում է Շողեր տատ, մյուսն էլ, չգիտես ինչու, Մաքրուհի դուդու:

Ու շատ սիրում են իրար իմ Շողեր տատն ու Մաքրուհի դուդուն: Օր չէր լինում, որ իրար չտեսնեին: Կամ տատս էր մի կերպ ժամանակ գտնում, իրեն գցում Մաքրուհի դուդուենց տունը, կամ նա էր գալիս:

Մենք՝ երեխաներս, չէինք ուզում, որ մեր տատը գնար, որովհետև առանց նրա մի քիչ տխրում էինք, մի քիչ էլ կռվշտում: Իսկ բացի այդ, Մաքրուհի դուդուն երբեք դատարկ ձեռքով չէր գալիս: Փշատ-մշատից բացի, նա միշտ մի քիչ կարտոֆիլ պիտի բերեր, մի քիչ ձավար, յուղ կամ մի քանի կտոր շաքար: Մենք գիտեինք, որ Մաքրուհի դուդուի ընտանիքն էլ մի լավ վիճակում չէր, բայց մեր դրությունն ավելի վատ էր: Ախր պատերազմ էր, հայրիկս գնացել էր



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ռազմաճակատ, մեր տան աշխատողը մնացել էր միայն մայրս: Նա գործարանում բանվորուհի էր ու ստացածն էլ այնքան չէր, որ մենք ապրեինք: Եվ, ուրեմն, Մաքրուհի դուդուն իր պարտքն էր համարում մեզ օգնել:

Բերում էր նա իր նվերները, մի տեսակ քաշվելով տալիս էր տատիկին ու տխուր-տխուր հառաչում.

— Եղած մի բան չէ, բայց համենայն դեպս:

Տատիկն էլ նույն կերպ հառաչելով, մթերքները պահում էր, քաղցրավենիքն էլ բաժանում մեզ: Եվ այստեղ էր, որ տատիկը հիշում էր իմ բոլորից մեծ լինելը և բոլորից վերջն էր ինձ բաժին տալիս: Ուրեմն, բոլորից մեծին՝ վերջում, իսկ բոլորից փոքրին, այսինքն Ալատին՝ ամենից առաջ ու ամենից շատ, պատճառաբանելով, որ նա մեր տան միակ տղան է: Ես դրանից չէի վիրավորվում, իսկ Նանարն ու Քնարը մութ էին անում ու կպչում Ալատին.

— Որ տղա ես ինչի՞ ես պետք, կոշիկներդ հագնել չգիտես:







— Համ էլ, որ իսկական տղա լինեիր, հայրիկի նման զինվոր կգնայիր:

Նրանք այսպես կռվշտում էին, տատն ու Մաքրուխ ռուդուն էլ քաշվում էին մի անկյուն ու սկսում իրենց զրույցը:

— Համենայն դեպս, ափ երթամ տեսնեմ Շողեր ինչպես ի,— ասում էր Մաքրուխ դուդուն այնպես, որ կարծես մի հարյուր տարի իր Շողերին չէր տեսել:

— Շատ էլ լավ արեցիր, Մաքրո՛ւխ ջան, ես էլ քեզ էի կարոտել,— նույնպես հարյուր տարվա կարոտով ասում էր տատս:

Հետո Մաքրուխ դուդուն տեղեկացնում էր, որ գիշերը երազում վաղուց մեռած իր հալևորին էր տեսել:

— Երևի թե խեղճ հալևոր այնտեղ մենակ կըտխրի և կուզե, որ ես իր մոտ երթամ: Ո՞ւր էր՝ երթայի...— հառաչում էր նա:

Չեմ կարծում, թե Մաքրուխ դուդուն իսկապես ուզում էր իր հալևորի մոտ երթալ: Նա գիտեր, որ տատիկս իրեն շատ է սիրում, և, ուրեմն, իրեն էր ավելի թանկացնում: Ու տատիկն, իսկապես հուզվում էր:

— Դե լա՜վ, լա՜վ, ուրիշ բան խոսենք, Մաքրո՛ւխ ջան,— հանդիմանում էր տատը,— բոլորս էլ վերջը մեր հալևորների մոտ ենք գնալու, դու ուրի՛շ բան ասա:

Մի անգամ էլ եկավ Մաքրուխ դուդուն և շատ խորհրդավոր տեսքով, կամբյուղից մի պոպիկ հանեց ու դրեց տատիկի փեշը: Տատիկն էլ իսկույն պոպիկի բերանը բաց արեց, հոտոտեց ու կարծես թե շփոթվեց:

— Վա՜յ, Մաքրո՜ւխ ջան, ինչո՞ւ ես էսպիսի բան արել, սխր էսպիսի բանը հիմի սև աղվես է դարձել, ու հարսն էլ պիտի վրաս խոսա, սփ իրենց երեխեքի բերնից կտրում բերում է...

— Ջանը՜մ, հարսի ի՞նչ բանն է,— ձեռքը թոթվեց Մաքրուխ դուդուն:

Ասաց ու նստեց: Տատիկն էլ պոպիկը գրկած մի քիչ դես-դեն արեց ու հանկարծ կանչեց Ազատին.

— Ազա՛տ, բալա, արի՛ պոպիկը տանենք մառան, չթթվի... Արի՛, ձա՞գ ջան, մառանում մկներ կան, ես վախենում եմ, դու տղամարդ ես, չես վախենա...

— Ես էլ եմ վախենո՞ւմ,— թնկթնկաց Ազատը,— բա ես մկից չե՞մ վախենում...

— Բան չկա, բալա՜ ջան, ես հետդ եմ, մի՛ վախեցի:— Տատը բռնեց Ազատի ձեռքն ու գրեթե զոռով տարավ իր հետ:

Քիչ հետո նրանք վերադարձան: Տատը նստեց իր ընկերուհու կողքին, Ազատն էլ բերանը լպստելով, սկսեց տրտինգ տալ:

— Գուջո՛, էդ ի՞նչ ես կերել,— իսկույն լարվեցին Նանարն ու Քնարը:

— Տատն ասաց՝ մարդու չասեմ:

— Ը՞, տա՛տ, Գուչոյին ի՞նչ ես ուտեցրել...
— Բան էլ չէ, ձեններդ կտրե՛ք, ամոթ է:
— Հա՞, բա՞, Գուչոյին ավեցիր, ամոթ չէ՞ր...
— Սո՛ւս արեք,— աքլորացավ Ազատը:— Տատն ասաց՝ ես տղա եմ, պուճուր եմ: Իրիկունը մայրիկը գա, էլի... Տա՞տ, էն ի՞նչ էր, որ իրիկունը պիտի ուտենք...
— Դե դու էլ ձենդ կտրի, բան էլ չենք ուտելու, պրծավ:
— Ո՞նց պրծավ, պուլիկը լիքն էր, մի գդալ ավեցիր...
Տատիկն էլ ճար չուներ, վերցրեց ավելն ու աղմկարարներին իր սիրելի Գուչոյի հետ դուրս քշեց:
Մինչև երեկո մենք Ազատին հարցուփորձ էինք անում, թե պուլիկի միջինն ինչ էր: Այնքան գլուխը տարանք, որ խեղճ Գուչոն լաց եղավ.
— Ախր չե՞մ իմանում, շատ համով էր ու սպիտա՞կ էր... անունը մոռացա:
Մնում էր սպասել մութն ընկնելուն ու մայրիկի գալուն: Թարսի պես, երկուսն էլ ուշանում էին: Ու երբ, վերջապես, մայրիկը դուռը բաց արեց, մենք վրա ավեցինք.
— Մա՞, հիմի համով բան ենք ուտելու...
— Մա՞, տատը Գուչոյին ավեց, մենք դեռ չենք կերել...
Մայրիկը մի կերպ ազատվեց մեր քաշքշոցից, գնաց հագուստները փոխեց, լվացվեց, եկավ նստեց սեղանի մոտ.
— Դե հիմա ի՞նչ ենք ուտելու, բերե՛ք ուտենք:
Տատիկը վեր կացավ, կանչեց Ազատին.
— Գուչո՛ բալա, գնանք բերենք:
Գնացին: Իսկ մենք անհամբերությունից եփվում ենք: Մայրիկն ուզում է իմանալ, թե այդ ինչ համով բան է, որ պիտի ուտենք, մենք՝ նույնպես:
— Մաքրուխ դուդուն բերեց, ասաց՝ թող ճժերն ուտեն, բայց տատը...
Ու մեկ էլ տատիկի կանչ ու ճիչը, Ազատի վռռոցը:
Բոլորս վազեցինք մառան ու, ի՞նչ տեսնենք... Ցեմենտած հատակին պուլիկի փշուր-փշուր եղած կտորտանքը, ցեմենտի վրա էլ կարծես յուղ են թափել ու խնամքով սրբել են: Ազատը քիթ-մռութը տըռորելով վռռում է, տատիկն էլ ծնկներն է ծեծում ու անիծում.
— Անագին պուլիկը ո՞նց են շուռ տվել, ջարդել, ոնց են էդքան սերուցքը կերել... Աչքս խավարեր, մատղաշներիցս խնայեցի, ասի իրիկունը էն հարսը կգա... Ջա՞րդն ընկնի մեջներդ, կատվնե՞ր...
Պարզ է արդեն, որ այսպիսի սուգ ու շիվանն առանց մեր մասնակցության չէր լինի: Բայց, ճիշտն ասած, մեզանից ոչ մեկը կարգին չգիտեր, թե այդ ինչ հրաշք բան էր այդ սերուցքը, որ կատուները կերել էին:

# ՀԻՇԻՐ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Երբ ախտադրում ոսոխն արնախում
Մեր իսկ արյունով մեր հողն էր ներկում,
Երբ սերմնացանը էլ հող չէր հերկում,
Էլ նրգ չէր երգում արտույտը դաշտում,
Տրակտորի տեղ տանկն էր սողում,
Եվ ջրերի մեջ ականն էր լողում,
Երկիրն էր ցնցվում արկի պայթյունից —
Դու դեռ չկայիր...
Երբ մեր զինվորը ողջ Եվրոպան էր
Ազատագրում,
Երբ ջախջախում էր ենեգ ոսոխներին
Իրենց որջերում,
Ռայխստագի վրա պարզում հաղթական
դրոշը կարմիր,
Պատերազմի հետ փակում էր արդեն
հաշիվները իր,
Երբ ետ էր դառնում զինվորը հաղթած,
Եվ արթնանում էր ծիծաղը քնած՝
Դու դեռ չկայիր...
Բայց նայի՛ր դու այն պապիկին անձեռ
Եվ աչքի լույսից զրկված այն մարդուն,
Կնճիռնե՛րը տես դու այն մայրիկի՝
Այդ պատերազմի հետքերն են խորունկ...
Լա՛վ նայիր, որդի՛ս, և չմոռանաս
Նրանց, որ մահով հաղթանակ բերին,
Բարձունքում քնած անհայտ զինվորին,
Եվ աղբյուրացած հերոսին հիշիր.
Իրենց արյունով խեղդեցին նրանք
պատերազմն ահեղ,
Իրենց արյունով բերեցին ծիծաղ
և պայծառ արև...

Նկ. ՅՈՒԼԻԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԻ



# ՊԱՏՄՎԱԾՔ, ՈՐԻ ՎԵՐՆԱԳԻՐԸ

*ԱԼԵՔՍԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

Ես քեզ կպատմեմ Փոքրիկի մասին, բայց լավ կլիներ, եթե սկզբում պայմանավորվեինք... Չեղավ. այսպես հատուկ-հատուկ պայմանավորվելը տխուր բան է: Հետո հանկարծ պատահում է այնպես, որ պայմանավորվածությունը մոռանում ես, ստիպված ես լինում շեղվել նրանից և զուր տեղը ամաչել դրա համար: Պարզապես հաճելի կլիներ, եթե դու չհարցնես, թե ինչպես է քայլում հավերժական որոնող Փոքրիկը, ինչպես է տխրում կամ ուրախանում, ինչպիսի կոշիկներ և հագուստ ունի, ինչպիսի դիմագծեր, աչքեր, շարժումներ, ինչպես է քնում և արթնանում: Սա ոչ էլ իր խնդրանքն է: Նա ընդհանրապես չի խոսում իր մասին, ոչ էլ ականջները լայն բաց արած՝ լսում, թե ուրիշներն ինչ կասեն, ինչպես կգնահատեն նրան և նրա արարքները: Նրան մշտապես հետաքրքրում են միայն ուրիշները, ուրիշների վիճակն ու գործերը, և Փոքրիկը միշտ ճանապարհորդում է...

Բայց քո աչքերը ինչո՞ւ են հետաքրքրասիրությունից փայլում ու մի քիչ էլ դժգոհ են: Ուզում ես, այնուամենայնիվ, իմանա՞լ, թե ով է Փոքրիկը, ինչպես է ժամանակ գտնում անվերջ որոնելու... Եվ էլի նման այլ հարցեր: Ինչ արած. գոնե մի անգամ պետք է պատասխանեմ քեզ, որ քո աչքերը այլևս չդժգոհեն ու չկորցնեն իմ ուշադրությունը և ես կարողանամ լավ հետևել Փոքրիկին:



Նա մի սովորական տղա է՝ բարի և հետաքրքրասեր: Եվ նա անվերջ-անվերջ որոնում է: Այսքանը: Իսկ ի՞նչ է որոնում: Ինքս էլ եմ այս հարցը տվել նրան: Ասել է՝ չգիտեմ: Ոչ էլ ես եմ կարողանում գուշակել: Գիտեմ միայն, որ բարի Փոքրիկի որոնումների նպատակը չար լինել չի կարող, տխուր լինել չի կարող:

Ահա, այժմ նա նորից գնում է մի ճանապարհով: Առջևում քաղաք է, որի դարպասի մոտ պահակներ են կանգնած: Դա էլ մի կարգին դարպաս չէ: Երկու ձող է տնկված ճանապարհի եզրերին և մի ձող էլ ամրացված է դրանց վրա ու փակում է ճանապարհը: Այն արգելաձողերի նման, որոնցով փակում են ճանապարհները գնացքների անցնելու պահերին: Պահակները լուռ բարձրացնում են քաղաքի մուտքը փակող ձողը և հանգիստ ասում ներս մտած Փոքրիկին.

— Գնա դեպի ձա՛խ:

— Ինչո՞ւ: Ես չեմ ուզում դեպի ձախ գնալ,— ասում է Փոքրիկը:

— Այդ դեպքում դու պետք է անմիջապես ետ դառնաս,— խիստ-խիստ առաջարկում են պահակները:

Փոքրիկը արդեն պատրաստվում է ետ դառնալ, բայց հրաժարվում է այդ մտքից: Գուցե դեպի ձախ տանող փողոցում ինչ-որ հետաքրքիր բան լինի, ասում է ինքն իրեն ու առաջ է գնում: Շրջապատում սովորական շենքեր են, ծառերի ու ծաղկանոցների շարքեր: Բայց և այնպես դրանց դիրքը տարօրինակ է թվում փոքրիկին: Նա մի պահ կանգ է առնում, որ ուշադիր դիտի, բայց տեղնուտեղը նրան է մոտենում մի աղջիկ և դժգոհ-դժգոհ հարցնում.

— Դու ո՞ւր ես գնում:

— Չգիտեմ:

— Ինչպե՞ս թե չգիտես,— հանդիմանում է աղջի՛կը:— Չի կարելի չիմանալ, թե ուր ես գնում: Ինչո՞ւ ես եկել մեր քաղաքը:

— Չգիտեմ:

— Որ չգիտես, նախ պետք է նստես աջից եկող տրամվայը և գնաս դեպի ձախ:

— Ո՞ւր:

— Կգնաս և կիմանաս:

— Բայց ես մի անգամ արդեն գնացել եմ դեպի ձախ: Էլ չեմ ուզում: Ոչ էլ ուզում եմ տրամվայ նստել:

— Այդ դեպքում դու պետք է անմիջապես ետ դառնաս, հեռանաս մեր քաղաքից,— պահակների նման խիստ-խիստ պահանջում է աղջիկը:

# ՀԱՅՏՆԻ Է ԴԱՌՆՈՒՄ ՎԵՐՋՈՒՄ

Նկ. ԿԱՐԵՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ

— Ինչո՞ւ ես դու էլ պահակների նման խոսում ինձ հետ,— հարցնում է Փոքրիկը:

— Սա քո առաջին հարցն է, և ես կպատասխանեմ,— ասում է զարմանալի աղջիկը և շարունակում.— Ես էլ եմ պահակ: Մեզ մոտ բոլորն էլ պահակ են:

Փոքրիկը տխրում է: Պատրաստվում է ետ դառնալ, բայց նրա հետաքրքրասիրությունը նորից բռնում է: Եվ աղջկա առաջարկով բարձրանում է աջից դեպի ձախ գնացող տրամվայը: Նա ուզում է նստել աջ կողմի նստարանին, բայց աղջիկը անմիջապես տնկվում է նրա դեմ և թույլ չի տալիս:

— Նստիր ձախ կողմի նստարանին,— խիստ-խիստ առաջարկում է նա:

— Ես չեմ ուզում նստել ձախ կողմի նստարանին:

— Այդ դեպքում ես անմիջապես կկանգնեցնեմ տրամվայը, քեզ կիջեցնեմ և ետ կտանեմ, քանի դեռ փողոցի կեսը չես անցել:

Փոքրիկը ընկճված նստում է ձախ կողմի նստարանին, որի վերևում մեծ-մեծ տառերով գրված է. «ՆՐԱՆՑ ՀԱՄԱՐ, ՈՎՔԵՐ ՉԳԻՏԵՆ, ԹԵ ՈՒՐ ԵՆ ԳՆՈՒՄ»:

Ձախ կողմի պատուհաններից երևում են մոտիկ-մոտիկ շենքերի խուլ պատերը: Խուլ են, որովհետև դուռ ու պատուհան չունեն:

— Ձեր շենքերը դուռ ու պատուհան չունե՞ն,— հարցնում է Փոքրիկը:

— Սա քո երկրորդ հարցն է, և ես կպատասխանեմ: Մեր շենքերի դռներն ու պատուհանները մյուս կողմից են:

Փոքրիկը շրջվում է, որ աջ կողմի պատուհաններից նայի դուրս: Պարզվում է, որ տրամվայի աջ կողմում պատուհաններ չկան և քաղաքի աջ կողմը տեսնել հնարավոր չէ:

— Ինչո՞ւ տրամվայի աջ կողմում պատուհաններ չկան,— հարցնում է Փոքրիկը:

— Սա քո երրորդ հարցն է, և ես չեմ պատասխանի:

— Ինչո՞ւ:

— Դու արդեն երկու հարց տվել ես և ես պատասխանել եմ:

— Հետո ի՞նչ:

— Նրանք, ովքեր չգիտեն, թե ինչու են եկել մեր քաղաքը և չգիտեն, թե ուր են գնում, երկու հարցից ավել տալու իրավունք չունեն: Այստեղ իջի՛ր:

Իջնում են: Պահակ աղջիկը Փոքրիկին տանում է դեպի դիմացի դարպասը և առաջարկում է անցնել այնտեղից:

— Ինչո՞ւ անցնեմ:

— Քո հարցին կպատասխանեմ միայն դարպասից անցնելուց հետո: Ետ նայել չի կարելի:

Անցնում են կամարակապ դարպասից: Առջևում դատարկ դաշտ է, որի միջով մի ճանապարհ է անցնում:

— Կարող ես գնալ այդ ճանապարհով,— ասում է պահակ աղջիկը:

— Ո՞ւր գնամ:

— Ուր որ ուզում ես:

— Բայց ես ուզում եմ տեսնել ձեր քաղաքը:

— Դու արդեն տեսար մեր քաղաքը:

— Ես ուզում եմ մյուս փողոցներով էլ անցնել:

— Մյուս փողոցներում տրամվայ չկա:

— Ավելի լավ,— ուրախանում է Փոքրիկը:— Ես ուզում եմ քայլել:

— Չի կարելի: Քայլելու իրավունք ունեն միայն նրանք, ովքեր գիտեն, թե ուր են գնում:— Պահակ աղջիկը նայում է դարպասի կամարից կախված ժամացույցին և զայրանում.— Դու ինձնից երկու րոպե ավել խլեցիր:

Եվ շտապ ետ է վազում:

Փոքրիկը մոտենում է դարպասին: Ուզում է տեսնել փողոցի աջ կողմը, որը տրամվայից չէր երևում: Չի հասցնում նայել. դարպասը մի անլուր թափով փակվում է նրա առջև:

Փոքրիկը շփոթված կանգ է առնում: Հետո հանում է ծոցատետրը, որտեղ սովորաբար գրում է իր տեսած բնակավայրերի անունները: Ավելի ճիշտ, տեսնելուց հետո ինքն է դրանց անուններ դնում: Իսկ ի՞նչ անուն տա այս տարօրինակ քաղաքին, որտեղ թույլատրվում է միայն աջից ձախ գնալ և ընդամենը երկու հարց տալ...

**«Արգելված ցանկությունների քաղաք»:** Այսպես է գրում Փոքրիկը ծոցատետրում և տխուր քայլում հեռու-հեռու տանող ճանապարհով:



# „ՍԿԶԲՈՒՆՔԱՅԻՆ" ՏՂԱՅԻ ՄԵԿ ՕՐԸ

ՎԱՀԱՆ ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

— Մի՞թե Արիկը ծույլ է,— հարցրեց պատմության ուսուցիչը:

— Ինձ այդպես է թվում,— պատասխանեց մաթեմատիկայի ուսուցիչը:

— Իսկ ինձ այդպես չի թվում,— ընդմիջեց կենսաբանության ուսուցիչը,— դա ծուլություն չէ: Նա պարզապես չի կարողանում կամքի՛ ուժ գտնել սովորելու նաև այն առարկաները, որոնցով չի հետաքրքրվում:

— Դա ծուլությո՞ւն է, թե՞ թուլություն,— հարցրեց մաթեմատիկայի ուսուցիչը:

Արիկը գլուխը կախ կանգնել էր պատի տակ: Երբեք ուսուցչանոցը նրան այդքան տհաճ չէր թվացել: Գոնե պատուհանին կամ բղավեին վրան: Թե չէ այնպես են խոսում, կարծես ինքը երեխա լինի: Նրան թվաց, թե հիմա մի բան կանի կամ կասի, բայց ոչինչ էլ չարեց, միայն ծնոտներն ամուր սեղմեց ու լռեց: Եվ համկարծ լսեց այն, ինչին սարսափով սպասում էր.

— Հիմա թող Արիկը մեկ խոստանա, որ այլևս նման բաներ չի անի:

Արիկը շատ լավ գիտեր, որ նման դեպքերում ինքը կանի ուղիղ հակառակը, ինչ իրենից սպասում են: Դարձյալ կփախչի դասից և մաթեմատիկայի ուսուցչին կասի բացեիբաց, որ դասը չգիտե, որովհետև գնացել էր խաղալու, խաղալը հաճույք է, իսկ մաթեմատիկան՝ տանջանք:

Ուսուցիչները ինչպե՞ս չէին հասկանում, որ Արիկը շատ ավելի խելոք է, շատ ավելի բան է հասկանում, քան թվում է իրենց: Արիկը շրջվեց և ցանկացավ դուրս գալ ուսուցչանոցից:

— Ո՞ւր, ա՛յ տղա,— հոգնած ձայնով հարցրեց դասղեկը:

— Գնամ հորս կանչեմ,— մրթմրթաց Արիկն ու շարունակեց իր հպարտ ընթացքը դեպի դուռը:

— Ինչի՞ համար:

Հետո ինչ-որ մեկն ավելացրեց.

— Վերն տալով դո՞ւրս արեք դպրոցից, վերջանա...

«Լավ,— մտածեց նա,— հիմա վերջին երկու դասը չեմ նստի, թող իմանան, կգնամ տուն և այնպես կըպատրաստեմ բոլոր դասերը, որ իրենք էլ ապշեն, կպահանջեմ, որ ինձ դաս հարցնեն, կշշմեցնեմ, հետո կասեմ, որ թվանշան չնշանակեն, ինձ բոլորովին պետք չէ: Ես Ռուբիկի նման ամեն «չորսի» ու «հինգի» հետևից վազող չեմ, ես թվանշանների տարոււ չեմ,— վերցրեց պայուսակն ու դուրս գնաց: Դռների մեջ հանդիպեց գծագրության ուսուցչին:

— Ո՞ւր ես գնում, Առաքելյա՛ն:

Արիկը լռեց: Ուղիղ նայում էր ուսուցչի աչքերին: Նա սուտ ասել չգիտեր: Նա կամ ճիշտ էր ասում, կամ լռում էր: Չգիտես ինչու, ոչ մի ուսուցիչ չէր սիրում տղայի այդ հատկությունը:

— Դարձյալ լռում ես, ո՞ւր ես գնում, Առաքելյա՛ն Արտաշես,— պոռթկաց ուսուցիչը:

— Տուն:

— Ինչո՞ւ, ի՞նչ իրավունքով:

— Ինձ պետք է,— խուլ ձայնով պատասխա-

## ԳԱՐՆԱՆԱՅԻՆ

ՍՎԵՏԼԱՆԱ ԱՐԱՋՅԱՆ

Կանաչել են արդեն
Ծառերը մեր բակի,
Ու պարտեզում՝ վարդեր,
Երգեր ուրախ հավքի:

Բողբոջները կարմիր
Կարծես նուռ են հագած,
Գարնան թեթև քամին
Օրորում է նրանց:

Տերևներն են պարում
Գարնան պարը կանաչ,
Լույսի ծափահարում
Ու ջրերի կարկաչ:

Կարծես ծառերն այգու,
Սաղարթներով փարթամ,
Ո՛չ ձմեռ են տեսել,
Ոչ էլ տերևաթափ:

նեց տղան ու դուրս վազեց դասարանից: Արցունքները խեղդում էին:

«Ինչպես որոշել եմ, այդպես էլ պիտի անեմ»,— վերջնական վճռեց նա ու քնած պահակին շրջանցելով՝ դուրս եկավ:

Դռան կեռը հանելիս պահակն արթնացավ ու փորձեց բռնել նրան, չկարողացավ:

— Սատանա՛, սպասի՛ր, թե ձեռքս կընկնե՛ս,— սպառնաց ծեր պահակն ու դարձյալ ամրացրեց կեռը:

Ճանապարհն անցնում էր կամրջով: Որքան էլ նա ցանկացավ ցած չնայել, չկարողացավ: Նայեց լայն գետին: Առաջին հերթի տղաները վաղուց լողանում էին: Գետի խորքում երկու տղա լողամրցում էին:

«Ոչ, պիտի տուն գնամ»,— մտածեց Արիկը:

Դիմացի շենքի պատուհանից մի կին կանչեց.

— Ռուբի՜կ...

Ափին պառկած դարչնագույն տղաները խմբովին կանչեցին.

— Ռուբո՜...

Լողամրցողներից մեկը շրջվեց ջրի մեջ ու գոռաց մորը.

— Չե՞մ գալիս:

Պատուհանի մոտ հայտնվեց մի տղամարդ, ակնոցներն ու լրագիրը ձեռքին.

— Ռուբե՛ն, անմիջապես տո՛ւն արի...

— Արի դասե՛րդ արա,— ավարտեց մայրը:

— Վաղը կանեմ,— գոռաց տղան և, ի նշան ավարտի, սուզվեց:

Հիմա Արիկը կգնա տուն: Ոչ մեկի հետ ոչ մի բառ չի փոխանակի՝ ուղիղ իր սենյակն ու պարապելու, ինչպես վճռել է: Եվ հանկարծ նա պատկերացրեց, թե ինչ է լինելու: Եվ դա միշտ այդպես էր: Կմտնի տուն, մայրը կասկածամիտ հայացքով կսկսի հարցուփորձ անել, թե ինչու այդքան շուտ եկավ: Ինքը կլռի, հետո մի քանի կգոռա ու վիրավորանքը ներսում սլահած՝ կմտնի իր սենյակը, մի կերպ իրեն ստիպելով նստել պարապելու: Բայց այդ պահին ներս կմտնի հայրը և նույնիսկ տեսնելով, որ ինքը պարապում է, հրամայական տոնով կասի.



— Դասե՛րդ արա:

Եվ այդ ժամանակ արդեն Արիկը ոչինչ չի անի, թեկուզ աշխարհը շուռ գա, թեկուզ վռնդեն դպրոցից:

Տղան պայուսակից դուրս քաշեց լողավարտիքը և սկսեց դանդաղ ցած իջնել գետի ափի զառիվայր լանջով...

Տուն գնաց ճիշտ ժամանակին, և ոչ ոք ոչինչ չասաց:

Հաջորդ օրը նորից դասերը չպատրաստած եկավ դասի և ոչ ոքից չպահանջեց դաս հարցնել, որպեսզի հետո ողորմածորեն նրան նվիրի թվանշանները: Եվ ոչ ոք էլ նրանից դաս չհարցրեց: Եվ ինքն այդպես էլ չիմացավ, թե այս բոլորի մեղավորն ով է:

## ԽԵ՛ՆԹԱՑԵԼ Է ԱՌՈՒ՛Ն

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Փոքրիկ առուն հսկա ձորում,
Քչփչում է քարերի մեջ
Ու ցոլցլում:
Մրջյունն անգամ, եթե ուզի
Ափից մյուս ափը գնալ,
Մի ծղոտե կոր կամրջով
Կարող է այն առուն անցնել
Ու չոր մնալ:
— Ծիծաղո՞ւմ եք, խե՞ղճ է առուն:
Բայց դուք եկեք տեսեք նրան,

Երբ գարուն է մեր լեռներում:
Ո՞վ կասի, թե նույն առուն է,
Հիմա այնպես փարարում է
Ու խենթանում,
Փետուրի պես նա առնում է
Ժայռ ու ծառեր մեջքին տանում...
Նրա շնչից հսկա ձորը դղրդում է.
Գարո՜ւն, գարո՜ւն,
Ամեն տարի փոքրիկ առուն
Մի վիթխարի գետ է դառնում...

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



«Այդ պատանին ես եմ...» — ասում է Յուրի Նիկուլինը

# ՍՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՐՏԻՍՏ ՅՈՒՐԻ ՆԻԿՈՒԼԻՆԸ ՊԱՏՄՈՒՄ Է ԻՐ ՄԱՍԻՆ

Բոլորովին անսպասելի հայրս ինձ ասաց, որ կրկես ենք գնալու: Ձեռքի վրայից տոմսակ գնեցինք ու ներս մըտանք: Կրկեսը ինձ վրա շշմեցուցիչ տպավորություն գործեց և մինչև օրս ամենայն մանրամասնությամբ հիշում եմ ներկայացման բոլոր համարները:

Տուն վերադառնալուց հետո խնդրեցի մայրիկին ինձ համար խեղկատակի շորեր կարել:

Ես այդ խայտաբղետ և ուշագրավ շորերով գնացի ծանոթ աղջիկներից մեկի տուն՝ դիմակահանդեսի: Եվ ահա այդ օրվանից, այն ժամանակ ես հինգ տարեկան էի, որոշեցի ինչ գնով էլ լինի ծաղրածու դառնալ:

Առաջին դասարանում սկսեցի հասկանալ, որ կան ավելի հետաքրքիր մասնագիտություններ, քան ծաղրածուն, օրինակ՝ հրշեջ, հեծյալ միլիցիոներ: Չնայած ծաղրածու դառնալու միտքը որոշ ժամանակ լքել էր ինձ, բայց բավական էր, որ մեր ուսուցչուհին հարցներ. «Ո՞վ է ուզում համերգի մասնակցել»,— ես առաջինն էի ձեռքս բարձրացնում:

Առաջին դերը, որը ինձ հանձնարարեցին, դա..., ոչխարի դերն էր: Ես մասնակցեցի «Բանջարանոց» ներկայացմանը՝ մի մեծ ստվարաթղթով, որի վրա նկարված էր ոլոռ: Ներկայացման տասը մասնակիցներով շարվել էինք բեմի վրա: Յուրաքանչյուրս, մեկ քայլ առաջանալով, հերթականությամբ պետք է խորատողանի բանաստեղծություն կարդայինք այն բանջարեղենի մասին, որը ունեինք մեր ձեռքում: Ես հայտնվեցի վերջում (երևի նրա համար, որ ամենափոքրն էի): Իմ բոլոր ինքը ընկերներն առանց շփոթվելու կարդացին բանաստեղծությունները: Հերթը ինձ հասավ: Մեկ քայլ առաջանալով, ես հուզմունքից բանաստեղծության փոխարեն աղաղակեցի.

— Անա՛ և շաղգամ:

Լռեցի և նորից կանգնեցի իմ տեղը:

Կատարվեց անսպասելին. բոլորը բանաստեղծություն են արտասանում, իսկ մեկը հենց այնպես ասում է. «Անա՛ և շաղգամ»: Դահլիճը ծիծաղում էր: Ես խորտակված հեռացա բեմից: Եռանդեռում ուսուցչուհին նայեց ինձ ու մեղադրական տոնով ասաց. «Խսկ դո՛ւ, Նիկո՛ւլին, երևում է խեղկատակ ես»:

Համերգից հետո ես երկու հետևություն արեցի. առաջին՝ արտիստ դառնալը սարսափելի է, երկրորդ՝ դպրոցում խեղկատակներին չեն սիրում:

Չնայած այդ ամենին, ես եկույթ էի ունենում պիոներական հավաքներին, ուրախացնում երեխաներին և դպրոցական խեղկատակի ճանաչում էի ձեռք բերել:

Դպրոցն ավարտելուց հետո երազում էի կինոռեժիսոր դառնալ, բայց, պահպանելով տան ավանդույթը, քիչ մնաց գործերս տայի մանկավարժական տեխնիկում: Սակայն կյանքում ամեն ինչ այլ կերպ ընթացավ՝ ինձ կանչեցին բանակային ծառայության: Այն ավարտելուց հետո պատրաստվում էի տուն վերադառնալ, սկսվեց Հայրենական մեծ պատերազմը: Բանակում ինքնագործ արվեստով էի զբաղվում, հանդես էի գալիս որպես հաղորդավար, կրկեսային համարներ էի հորինում, երգչախումբ էի կազմակերպում: Յոթ տարի ծառայելուց հետո միայն զորացրվեցի և փորձեցի ընդունվել որևէ թատերական ինստիտուտ կամ ստուդիա:

Եվ ամեն տեղ անհաջողու-



Յուրի Նիկուլինը և ՍՍՀՄ տիեզերագնաց, Սովետական Միության Հերոս Պավել Պոպովիչը

թյուն: Ինձ չէին ընդունում: Բայց ես չէի հուսահատվում և համառորեն պատրաստվում էի... Վերջապես ինձ ընդունեցին Մոսկվայի կոլեջին կից ստուդիան:

Երկու տարի սովորելուց հետո սկսեցի աշխատել ամենահռչակավոր խեղկատակի՝ Կարանդաշի խմբում: Այնտեղ շարունակվեց իմ խեղկատակային կրթությունը և այնտեղ էլ ես ծանոթացա Միշա Շույդինի հետ: Արդեն քսանորդ տարի մենք միասին ենք աշխատում:

Մինչև 1957 թվականը ինձ երբեմն-երբեմն հրավիրում էին տարբեր ֆիլմերում նկարահանվելու: Փորձեր էին անում, բայց հետո ոչինչ չէին ասում: Ուրեմն, մտածեցի ես, կինոյի համար պիտանի չեմ: Այդ թվականին կրկեսում պատահաբար հանդիպեցի դրամատուրգ Վլադիմիր Պոլյակովին և նա առաջարկեց նկարահանվել իր սցենարով ստեղծվող «Կիթառով աղջիկը» կինոնկարում: Ես հրագործի դեր էի կատարում, երիտասարդական փառատոնի համարներ ընտրող հանձնաժողովի անդամներին ցույց էի տալիս հրթիռային հրավառություն, բայց այնպես, որ քիչ էր մնում բոլորին պայթեցնեի: Նկարահանումը դժվար էր, բայց էկրանի վրա շատ ծիծաղելի ստացվեց: Դրանից հետո ինձ սկսեցին հրավիրել այլ կինոներում նկարահանվելու. «Կովկասի գերուհին», «Բարբոս շունը և անսովոր վազքը», «Իմ ընկեր Կոլկան» և այլն:

Ինչպես բոլոր դերասաններին, այնպես էլ ինձ հետաքրքրքրում էր, թե ինչ տպավորություն կթողնի իմ խաղը հանդիսատեսի վրա: «Ինձ մոտ, Մուխթար» կինոյի նկարահանումներն ավարտելուց հետո, գնացի մանկական ներկայացման պրեմիերային, տեսնելու, թե ինչպես են ընդունում երեխաները կինոնկարը:

Կինոնկարն սկսվեց: Առաջին կադրերն անցան: Հայտնվեց Գլազիչևը: Եվ այդ պահին իմ առջև նստած երեխաներից մեկը սկսեց տեղում անհանգիստ պտտվել ու չհամբերելով գոռաց. «Նայե՛ք, նայե՛ք, Նիկու՜լինը, նա հիմա մի բան կթռցնի»: Այս լսելով, ես ուղղակի շնչահեղձ եղա ու տրամադրությունս ընկավ: Մի՞թե ես բոլորի համար ընդմիշտ կմնամ հարբեցողի ու դանդալոշի մեկը՝ չնայած կյանքում բոլորովին ուրիշ եմ: Բայց քիչ ժամանակ անց, նկատեցի, որ իմ փոքրիկը լարված հետևում է էկրանին, իսկ վերջում, ինչպես բոլորը, այնպես էլ նա, ցավում էր Մուխթարի համար:

Իհարկե, միշտ չէ, որ դերասանը, հատկապես կինոյում, գոհ է լինում իր դերակատարումից: Որքան էլ աշխատել եմ ընդունել նկարահանվելու այնպիսի հրավերներ, որտեղ առաջա դերը ինձ դուր է եկել նախօրոք, միևնույն է, անհաջողությունից չեմ խուսափել: Իմ խաղը չստացվեց «Ծերունի ավազակները» նկարում: Ես երկար ժամանակ զայրացած էի ինքս ինձ վրա և անտրամադիր: Այդպես է պատահում և կրկեսում: Փորձում ես, փորձում, բայց ելույթի ժամանակ հանդիսատեսը չի ծիծաղում: Եթե կրկեսում այդ համարի վրա կարող ես նորից աշխատել, ապա կինոյում այդ հնարավորությունը չունես, անհաջող դերը տարբեր առիթներով հետապնդում է քեզ:

Ընդհանրապես դժվար է խեղկատակ՝ լինելը: Փորձիր մարդկանց ուրախացնել, ծիծաղեցնել, երբ քո տրամադրությունն ընկած է: Բայց այդպիսին է խեղկատակների աշխատանքը՝ դուրս եկար ներկայացման հրապարակ, պետք է ծիծաղեցնես, զվարճացնես, ուրախություն պարգևես մարդկանց:

Դժվար է խեղկատակ լինել նաև այն պատճառով, որ նա գրեթե կտրված է ընտանիքից ու հարազատ քաղաքից: Երբ թերթում եմ իմ «Կյանքը անվադողերի վրա» հուշատետրը, տեսնում եմ, որ լավագույն դեպքում տարվա մեջ միայն երեք ամիս եմ տանը եղել, մնացած ժամանակը անցել է ուղևորություններով ու շրջագայություններով: Չնայած բազմաթիվ հետաքրքիր հանդիպումներ են եղել աշխարհի տարբեր ժողովուրդների հետ և ուղևորությունները միշտ էլ տպավորիչ են եղել, բայց դա ծանր կյանք է:

Խեղկատակ դառնալու համար պետք է բնածին հումորի զգացում ունենալ, կամ էլ ձեռք բերել այն: Պետք է ունենալ մարդկանց ծիծաղեցնելու ընդունակություն, տաղանդ: Պետք է կարողանալ կյանքում փնտրել ծիծաղելին, հիշել այն հետագայում: Դա շատ կօգնի...

Ես շատ կուզենայի որ յուրաքանչյուր դրուժինայում, ջոկատում կազմակերպվեր կինոսիրողների խմբակ, սեփական կրկես, երաժշտական երեկոներ, հետաքրքիր պատի թերթեր լույս ընծայվեին, երեխաները կինո, թատրոն հաճախեին և դրանց շուրջ քննարկումներ անցկացնեին: Չէ՞ որ զարգացած մարդը ավելի հեշտ է հաղթահարում դժվարությունները, իրականացնում իր երազանքները:





# „ԱՄԵՆԱՆՈՒՐԲՆ ՈՒ ԱՄԵՆԱՍՈՒՐԲԸ..."

(Հ. Թումանյանի երաժշտական աշխարհը)

Լոռվա չքնաղ բնության գրկում ծնվեց Թումանյանը: Բնության այդպիսի սիրահարը չէր կարող հոգով երաժիշտ չլինել: Ժողովրդական տասնյակ մեղեդիներ գիտեր, հիշողության մեջ միշտ թարմ էին մանկության երաժշտական տպավորությունները: Հայրը սիրում էր երգել և նվագել, նրանց տանը հաճախ հյուր էին ժողովրդական երաժիշտները, աշուղները: Վարդավառի տոնին աղջիկների երգն ու պարը, յայլաներում հովվի սրընգի կանչը, ձմռան գիշերվա հարսանիքը իր զուռնայով, կոխ բռնելով. ամենը ապրեց նրա հոգում, ամենը բանաստեղծական կենդանի կերպարների ձևով մարմնավորվեց պոեմներում, հեքիաթներում...

Չի կարելի մոռանալ և այն երաժշտական մթնոլորտը, որ շրջապատում էր նրան Թիֆլիսում պատանեկության տարիներից ի վեր: «Երբ ես առաջին անգամ Թիֆլիս եկա՝ ուսումնարան մտնելու, ինձ թվաց, թե ընկա մի հսկայական հարսանքատուն: Զուռնա-դհոլ, դայիրա, նաղարա, ծափ, ծիծաղ, պար, երգ... Էն էլ ոչ թե տներում, այլ դուրսը, դռներին, կտուրներին»,— այդպես է պատկերում Թումանյանը իր վաղ տպավորությունները:

Մեծ բանաստեղծին առանձնապես մոտ էր երաժշտությունը հենց ժողովրդական հասկացությամբ և կատարմամբ: «Սասունցի Դավթի» վրա աշխատելիս նրա ուշադրությունից չվրիպեցին էպոսի երաժշտական հատվածները, որոնք արտասանվում և երգվում էին վիպասանի կողմից: Մեծ խանդավառությամբ էր լսում մեծանուն աշուղ Ջիվանուն, հին վարպետներից բարձր էր դասում Նաղաշ Հովնաթանին և հատկապես Սայաթ-Նովային: Եվ մի՞թե խորիմաստ չէ այն փաստը, որ հենց Թումանյանի նախաձեռնությամբ Սայաթ-Նովայի գերեզմանին դրվեց մի գեղեցիկ հուշարձան...

«Բանաստեղծը,— ասել է Թումանյանը,— միայն մարմին է տալիս իր մտքերին ու զգացմունքներին և իր ոգևորությամբ կենդանության շունչ է շնչում նրան, որ նա ապրի մշտապես, բայց որ նա թռչի՝ դրա համար նրան թևեր են հարկավոր, իսկ թևեր տալ նա կարող է միմիայն էն կախարդական աշխարհում, որ կոչվում է երաժշտություն»: Եվ Թումանյանը միշտ ոգեշունչ գովերգում էր երաժշտությունը, իր իսկ խոսքերով՝ «ամենանուրբն ու ամենասուրբը, ամենաթանկ բանը, որ կա աշխարհում և կյանքի մեջ»:

Թումանյանի գործերի անսահման հարուստ ու բազմազան թեմատիկան, կերպարների պատկերավորությունը, լեզվի երաժշտականությունը միշտ գրավել և գրավում են տարբեր անհատականության տեր կոմպոզիտորների: «Հովհաննես Թումանյանի գրեթե բոլոր գրվածքները կարելի է այս կամ այն ձևով երաժշտության վերածել, այնքան տրամադրող և հնչուն են դրանք»,— գրել է «Անուշ» օպերայի հեղինակ Արմեն Տիգրանյանը:

Հայտնի է, որ Կոմիտասը առաջինն էր, որ անդրադարձավ «Անուշ» պոեմին՝ օպերա ստեղծելու նպատակով: Սակայն կյանքի ողբերգական դիպվածները թույլ չտվեցին ավարտի հասցնել այն: Կոմիտասից հետո «Անուշի» թեման շատերին է գրավել, բայց միայն Արմեն Տիգրանյանի օպերայում անմահ պոեմը իր արժանի երաժշտական մարմնավորումը ստացավ: Թումանյանի սիրված հերոսները ապրեցին նոր կյանքով՝ կրկնապատկելով իրենց հմայքը երաժշտական և բեմակատարողական միջոցների ներգործությամբ: Ժողովրդական պոեմը դարձավ ժողովրդական օպերա...

Բարեկամական ջերմ կապ հաստատվեց Թումանյանի և Ալեքսանդր Սպենդիարյանի միջև: Երկու ականավոր արվեստագետների առաջին հան-

# ՆՐԱՆՔ ԲԱՐՁՐԱՑՐԻՆ ԻՐԵՆՑ ԴՊՐՈՑԻ ՀԵՂԻՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Երևանի Աբովյանի անվան դպրոցի 10-րդ դասարանի քսան աշակերտներից տասնհինգ ընդունվեցին տարբեր բարձրագույն ուսումնական հաստատություններ։ Սակայն չեն մոռացել հարազատ դպրոցի ճամփան և առիթ լինելիս այցելում են իրենց փոխարինողներին, նաև ընկերներին, ուսուցիչներին, աշակերտական նստարաններին...*

Դպրոցի դիրեկտորի առանձնասենյակում դրված է Խաչատուր Աբովյանի փոքրիկ արձանիկը։ Սրանից մոտավորապես հարյուր հիսուն տարի առաջ մեծ լուսավորիչն ինքը գիտելիքներ ձեռք բերելու համար հասավ էստոնական Դորպատ քաղաքը։ Հասավ, որպեսզի վերադառնալուց հետո հիմքը դնի մեր նոր գրականության, աշխարհաբար գրականության, որը պետք է ժողովրդի լեզվով խոսեր ժողովրդի հետ, ոչ թե արդեն մեռած գրաբարով։ Սա վաղուց արդեն պատմություն է դարձել, լեգենդ դարձող պատմություն...

Երկու-երեք տարի առաջ Երևանի տարբեր դպրոցներից, Հայաստանի ու Վրաստանի մի շարք շրջաններից երկու տասնյակ տղաներ ու աղջիկներ եկան, միավորվեցին մայրաքաղաքի մեծ լուսավորչի անունը կրող դպրոցում և այստեղ մաթեմատիկական թեքումով դասարան ստեղծվեց։ Սկսվեց «չոր ու ցամաք» մաթեմատիկական բանաձևերի վրա սիրահարված դասարանի պատմությունը։

— Այդ դասարանում ճշգրիտ գիտությունները էին հիմնականը,— ասում է դպրոցի դիրեկտոր ընկ. Մկրտչյանը։ — Եվ, իհարկե, առաջին հերթին պատշաճ խորությամբ մաթեմատիկա էր դասա-

---

դիպումը կայացավ 1916 թվականին Թիֆլիսում։ Նրանք երկար աշխատեցին համատեղ։ Իր ապագա օպերայի համար Սպենդիարյանն ընտրեց «Թմկաբերդի առումը» պոեմի սյուժեն։ Եվ ահա տարիներ անց ծնվեց «Ալմաստը»՝ հայ դասական օպերայի անգնահատելի գանձը՝ գլխավոր հերոսուհու հակասական ու բարդ ներաշխարհի հոգեբանորեն նուրբ վերհանումով, երաժշտական խոր ընդհանրացումներով, ազգային-բնորոշ ինտոնացիաների, դարձվածքների, թեմաների սիմֆոնիկ տիպի զարգացումով։

Իսկ քանի-քանի ուրիշ կոմպոզիտորների է ոգևորել Թումանյանի պոեզիան, թևավորել նրանց երևակայությունը, օգնել բացահայտելու իրենցը, ինքնատիպը, անհատականը։ Ռոմանոս Մելիքյան և Անուշավան Տեր-Ղևոնդյան, Միքայել Միրզայան և Դանիել Ղազարյան, Կարո Զաքարյան և Արամ Քոչարյան, Մարտին Մազմանյան և Էդվարդ Միրզոյան, Էդվարդ Բաղդասարյան և Էդվարդ Աբրահամյան... Տասնյակ մեծ ու փոքր գործեր, պոեմներ և սիմֆոնիկ պոեմներ, մանկական օպերաներ և երգեր, կինոնկարների և թատերական բեմադրությունների երաժշտական ձևավորումներ. դրանք արժեքավոր ավանդ հանդիսացան հայ երաժշտության մեջ։

Թումանյանական երաժշտական կոլեկտիվները սիրով բեմադրում են Արամ Մանուկյանի «Չարի վերջը» մանկական օպերան։ Երևանի օպերայի և բալետի թատրոնում հազարավոր աշակերտներ դիտել-ունկնդրել են Գրիգոր Հախինյանի «Ախթամար», «Ուրին» և «Լոռեցի Սաքոն» բալետները, Էրիկ Հարությունյանի «Հեքիաթ մեծահասակների համար» օպերան (ըստ «Մի կաթիլ մեղրի»)։ Իսկ վերջերս նույն թատրոնի բեմում հաջողությամբ ներկայացվեց Ստեփան Ջրբաշյանի «Գիքոր» օպերան։

Թումանյանի պոեզիայով ներշնչված երաժշտական ներկայացումներում բացահայտվեց և համաժողովրդական ճանաչում ստացավ Հայկանուշ Դանիելյանի, Շարա Տալյանի, Տաթևիկ Սազանդարյանի, Պավել Լիսիցյանի, Գոհար Գասպարյանի և շատ ուրիշ անվանի արտիստների տաղանդը, այդ ներկայացումները կյանքի կոչեցին մի շարք փայլուն ձևավորումներ՝ Մարտիրոս Սարյանից մինչև Մինաս Ավետիսյան։

Այդպես է լինում միշտ. մեծ արվեստագետի դերն ու նշանակությունը չի սահմանափակվում որևէ մեկ ասպարեզով։ Նրա ստեղծագործությունը արձագանք է գտնում արվեստի հարակից բնագավառներում, հարստացնում է դրանք արժեքավոր գաղափարներով, կենսական կերպարներով, նոր հորիզոններ հայտնագործում...



ԱՐՄԵՆ ԲՈՒԴԱՂՅԱՆ



*Խ. Աբովյանի անվան դպրոցի շրջանավարտները՝ դասղեկ Ե. Պետրոսյանի հետ*

վանդվում: Բայց արի ու տես, որ աշակերտներին հետաքրքրում էր ամեն ինչ և բոլոր առարկաներն էլ, առանց բացառության, լավ էին սովորում:

Երբ ՀԼԿԵՄ Երևանի Մյասնիկյանի շրջկոմից եկան նրանց գրականության դասը լսելու, «չոր» թվերի այդ երկրպագուներին հիացմունքի ու դրվատանքի բազմաթիվ խոսքեր ասվեց:

Ցավոք, կան (և ոչ քիչ) աշակերտներ, որոնք չհասկացածը թաքցնելու տարօրինակ սովորություն են ձեռք բերել, դասերի ժամանակ հուշողների կամ ծածկաթերթիկների օգնությամբ մի կերպ դրական գնահատական ստանալու անիմաստ սովորություն: Արդյունքը լինում է այն, որ կայուն գիտելիք չեն ստանում: Բայց ահա Աբովյանի անվան դպրոցում ուսուցիչները իրավացի հպարտությամբ պատմում են, որ 10-րդ «Գ»-ում իրար «հուշում էին» միմիայն դասերից հետո, երբ հավաքվում էին գրատախտակի մոտ՝ առավել բարդ խնդիրները միացյալ ուժերով վճռելու, նոր կարդացած որևէ հետաքրքիր գրքի մասին զրուցելու կամ միջոցառում կազմակերպելու համար:

— Հիմա բոլոր իններորդցիներն ու տասներորդցիները նույնպես հետևում են նրանց օրինակին,— շարունակում է դիրեկտորը: Եվ ընդհանրապես, նրանց հաջողությունն ու օրինակը շատ բարձրացրեց դպրոցի հեղինակությունը:

Այսօր այլևս նրանք աշակերտներ չեն: Երեքը Երևանի պետական համալսարանի ուսանողներ են, տասնմեկը՝ պոլիտեխնիկական ինստիտուտի: Քսանից մեկը երազում է զինվորական դառնալ: Ճիշտ է, այս տարի այդ նրան չհաջողվեց (բժշկական հանձնաժողովը մերժեց նրան՝ թույլ առողջության պատճառով): Սակայն կասկածից վեր է, որ նա կարդացել է Սուվորովի մասին, գիտի, թե ինչպիսի համառությամբ էր նա կոփում իրեն:

Ես զրուցում եմ նրանց դասղեկի հետ: Մաթեմատիկայի ուսուցիչ Ե. Պետրոսյանը 23 տարի թըվերի լեզվի գաղտնիքներն է ուսուցանում տարբեր սերունդների:

— Երբեմն ասվում է, որ իբրև թե հասարակական աշխատանքը խանգարում է աշակերտների ուսմանը,— ասում եմ ես: Անցյալ տարվա ձեր դասարանում բոլորը լավ էին սովորում...

— Եվ լավ էլ մասնակցում էին հասարակական աշխատանքներին,— վրա է բերում դասղեկը:— Եթե դպրոցում որևէ միջոցառում էր կազմակերպվում, մենք բոլորս համոզված էինք, որ 10-րդ «Գ»-ն ամբողջ կազմով ամենաակտիվ մասնակցությունը կբերի: Դպրոցում այդ դասարանն էր, որ առաջին անգամ մասնակցեց «Արծվիկ» ռազմահայրենասիրական խաղին, արվեստի աշխատողի տանը հանդիպում կազմակերպեց «Քաոս» ֆիլմի ստեղծագործական կոլեկտիվի հետ, քննարկեց կինոնկարը: Նրանք հաճախակի հանդիպումներ էին կազմակերպում տարբեր մասնագիտությունների տեր մարդկանց հետ: Իսկ Վարդան Գյուրջինյանը, որ հիմա համալսարանի մեխ-մաթ ֆակուլտետում է սովորում, ղեկավարում էր դպրոցի աշակերտական գիտական խորհուրդը...

Նրանց ուսանողության առաջին տարին է: Մի դպրոցը ավարտել են, սկսվել է մեկ ուրիշը: Այս նորը նույնպես նվիրում է պահանջում: Գիտությունը քմահաճ է և պահանջում է անմնացորդ նվիրում: Այնուամենայնիվ, նրանք ժամանակ են գտնում այցելելու իրենց դպրոցը, ուսուցիչներին, աշակերտներին:

Իսկ դպրոցը հարազատի պես գրկաբաց է ընդունում նրանց իր հարկի տակ:

# ԸՆԿԵՐ, ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆ, ԸՆԿԵՐԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ

*Մեր ամսագրի դպրոցական բաժնի վարիչ, լրագրող ՎԱԶԳԵՆ ՄԵԼԻՔՅԱՆԸ հանդիպում ունեցավ Երևանի Մ. Սպանդարյանի անվան N 23 դպրոցի մի խումբ իններորդ դասարանցիների հետ: Այն, ինչ որ պատմվում է ստորև, նրանց պատմածն է, որի շուրջը հրավիրում ենք մեր ընթերցողների մտքերի փոխանակությանը: Ձեր կարծիքները կհրապարակվեն ամսագրի էջերում:*

## ԵՐԿՈՒ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆ

Ցածր դասարաններից սկսած՝ Վրեժը ընկերություն էր անում շատ տղաների ու աղջիկների հետ: Սակայն գնալով նրա ընկերները քչացան, մնաց մեկը: Իսկ այդ մեկի հետ նրա ընկերությունը ոչ մի լավ բանի չհասցրեց: Երկուսով միայն դասերից փախչելու, կռվելու ու վատ արարքներ թույլ տալու, ծխելու ընկերներ էին: Համադասարանցիները տեսնում էին այդ ամենը և չէին միջամտում: Դժվար էր ասել, թե ինչով կավարտվեր այդ պատմությունը, եթե Արթուր Մուրադյանը համառորեն չձգտեր Վրեժին այդ կործանարար ընկերությունից դուրս բերել: Արթուրը այդ ամենը արել էր աննկատ: Մի օր ասել է, թե հրաշալի ֆիլմ է գնում այսինչ կինոթատրոնում, մյուս օրը առաջարկել է զբոսանքի գնալ և, իբր, պատահաբար կանգ են առել մի ցուցասրահի դռան մոտ: Հետաքրքրել է, ներս են մտել: Երբեմն էլ իրենց տուն է հրավիրել նկարներ նայելու, երաժշտություն լսելու, դասեր պատրաստելու համար:

Սկզբում Վրեժին թվացել էր, թե Արթուրը ուզում է իր հետ ընկերանալ և դրա կարիքը ունի: Սակայն շուտով հասկացել էր, որ նա այդ ամենը անում է իրեն վատ ազդեցությունից հեռացնելու համար: Հասկացել է նաև, որ ինքը բեռ է նրա ուսին՝ ծանր բեռ, բայց նոր ընկերը սիրով է կրել այդ ծանրությունը: Վրեժը երախտագիտությամբ է լցվել դեպի Արթուրը, սկսել է լավ սովորել, դասերից չբացակայել, որ ցավ չպատճառի նրան: Նախկին ընկերը մոռացվել է, իսկ ինքը աստիճանաբար վերափոխվել է, դարձել ուրիշ մարդ: Նոր ուսումնական տարվա սկզբին նա այնպիսի առաջադիմություն ու օրինակելի վարք է ցուցաբերել, որ ընտրել են դպրոցի կոմերիտական կազմակերպության բյուրոյի անդամ:

Վրեժի բախտը պարզապես բերել է, որ Արթուրի նման մեկը եղել է իր կողքին:

## ԱՐՋԻ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆ

Անահիտը ընդունակ աղջիկ էր, բայց վատ էր սովորում, հեռու էր պահում իրեն հասարակական կյանքից: Վրեժը զգում էր, որ այդ ամենը ոչ թե Անահիտի ծուլությունից ու անտարբերությունից է գալիս, այլ նրա մոտիկ ընկերուհու վատ ազդեցությունից: Վրեժը փորձում էր Անահիտին սթափեցնել (ինչպես ժամանակին Արթուրն էր սթափեցրել իրեն), բայց ընկերուհին խանգարում էր, բամբասանքով վերաբերվում Վրեժի ասածներին:

Եղավ մի շրջան, որ Անահիտը կարծես սթափվեց, սկսեց խնամքով պատրաստել դասերը, չբացակայել: Վրեժը ուրախացավ և ասաց, որ եթե այսպես շարունակի, նա կարող է դիմում տալ և կոմերիտմիության շարքերն անցնել: Սակայն ընկերուհու հետ նրա մտերմությունը վերսկսվեց: Անահիտը նորից թերացավ դասերի մեջ, բայց դիմում տվեց, որ կոմերիտմիության շարքերն անցնի: Վրեժը զգուշացրեց, որ դեռ վաղ է այդ մասին մտածել: Նա չլսեց:

Բյուրոն նրա դիմումը մերժեց: Դեմ քվեարկեց նաև Վրեժը: Բյուրոյի նիստից հետո Անահիտի այն նույն ընկերուհին Վրեժին «աղջիկ» էր անվանել: Դա գուցե և այնքան չվիրավորեր Վրեժին, եթե Անահիտին դուր չգար ընկերուհու այդ վատ ու ավելորդ պաշտպանությունը, որը այլ բան չէ, քան «Արջի ծառայություն»:

## ԻՆՉՊԵՍ ՓՈԽՀԱՏՈՒՑԵՑ

Արևիկը Անժելայի ամենամոտ ընկերուհին էր: Այնքան մոտ, որ դասարանում երկվորյակ քույրեր էին անվանում նրանց: Մի օր Արևիկենց տուն գնալիս Անժելան պատշգամբի տակ նկատեց ընկած ընկերուհուն: Նրան դժբախտություն էր պատահել. երկրորդ հարկի պատշգամբից ցած էր ընկել: Անմիջապես օգնություն կանչեց և տեղափո-

խեցին հիվանդանոց: Արևիկը շատ արյուն էր կորցրել: Հիվանդանոցում պահանջվող խմբի արյուն չկար: Հավաքվածների արյունն էլ չէր բռնում: Անժելան առաջարկեց իր արյունը փորձել: Պարզվեց, որ դա համապատասխանում է: Ուրախացավ, որ ընկերուհուն ինքն է փրկելու և բժիշկներից թաքցրեց իր սակավարյուն լինելը: Դրանից հետո նա իրեն շատ վատ էր զգացել: Առողջությունը վերականգնելու համար մեկ ամիս պահանջվեց: Բայց դրա համար չէր ափսոսում. չէ՞ որ ընկերուհուն կյանք էր վերադարձրել: Առողջանալուն պես շտապեց նրա մոտ: Սակայն շնորհակալության փոխարեն կոպիտ ու վիրավորական խոսքերի արժանացավ...

Մի քանի օր անց իմացավ, որ այդ ամենի պատճառը մյուս ընկերուհին է, իր հասցեին չարախոսել է, և Արևիկը հավատացել է դրան: Այս պատմության մեջ ամենավատ դերը ո՞ւմն է: Ի՞նչ է ձեր կարծիքը:

## ՕՏԱՐԸ

Դասարանում երեք նորեկներ կային: Մեկը արդեն շատ թե քիչ մերվել էր նոր միջավայրին, իսկ երկուսը դեռ մեկուսացած ու առանձնացած էին: Հռիփսիմեի համար նոր դասարանը հետաքրքիր չէր, որովհետև դասերից հետո բոլորը դուրս են նետվում դասարանից և միմյանց ցտեսություն անգամ չասելով ցրվում: Այդպես չէր իրենց նախկին դասարանում: Ապրում էին ընդհանուր հետաքրքրություններով: Դասերից հետո խմբակների պարապմունքների էին մասնակցում, հանդիպումներ և այլ միջոցառումներ կազմակերպում: Այնպես որ միայն դասաժամին չէ, որ միասին էին լինում: Էլ քանի որ այստեղ նման բաներ չկային, նոր ընկերներին մերձենալու առիթ չէր լինում:

Այնուամենայնիվ Հռիփսիմեն ուշ թե շուտ կմերձենա մյուսներին: Բայց Օֆելյայի ու դասարանի միջև անջրպետը գնալով ավելի է մեծանում: Դրա համար լուրջ պատճառ չկա: Պարզապես դասը պատասխանելիս Օֆելյան սովորություն ունի ձեռքերի մատները տրորել, այլ շարժումներ անել: Նախորդ դասարանի ընկերները տարօրինակ ոչինչ չէին տեսնում դրա մեջ և չէին էլ նկատում, իսկ նոր դասարանում դա առիթ տվեց ծիծաղի, ավելորդ սրախոսության: Աշակերտներից ոչ ոք չփորձեց ընկերներին զսպել, հանդիմանել՝ պաշտպանել նորեկին: Ոչ մեկը չուզեց մտածել, թե ինչ է կատարվում նորեկի հետ, երբ նա հաճույքով գրատախտակին է մոտենում նախապատրաստված դասը պատմելու կամ բացատրելու և հանկարծ ընկերները սկսում են ծաղրել նրա շարժումները, շփոթեցնել նրան, մոռանալով, որ Օֆելյայի կամքից անկախ է այդպես ստացվում և ծաղրելով չեն օգնի իրենց համադասարանցուն:

Եթե որևէ բան պետք է ուղղել նրա մեջ, ապա դա պետք է անել զգույշ, ընկերոջ հոգատարությամբ, ոչ թե այնպես, ինչպես անում են իններորդցիները:

Բանից պարզվում է, լավ ընկեր լինել այնքան էլ հեշտ ու հասարակ բան չէ:

## ԾԱՆՐ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Ծովինարն ու Հայկը դեռևս ցածր դասարաններից միասին էին դասերը պատրաստում և լավ ընկերներ էին: Իսկ բարձր դասարանում, երբ ընկերությունը մտերմության փոխվեց, աշակերտները նրանց տեսնելիս սկսեցին շշուկներ փոխանակել, երկիմաստ ժպտալ ու չարախոսել: Անժելան Ծովինարի ընկերուհին էր և պաշտպանում էր նրան, հանդիմանում մյուսներին: Թեև Հայկը իրենց դասարանից չէր, Ծովինարի հետ մասնակցում էր իրենց դասարանի բոլոր երեկոներին:

Դասարանի մի այդպիսի երեկոյի ժամանակ Հայկը ամբողջ երեկոն անցկացրեց մեկ ուրիշ աղջկա հետ: Անժելան վիրավորական համարեց այդ իր ընկերուհու համար և երեկոյի վերջում չհամբերեց, մոտեցավ Հայկին և նկատողություն արեց, ասելով, թե նա իր ընկերուհու հետ էր երեկո եկել և չպետք է համադասարանցիների մոտ այդպես անտեսեր նրան: Հայկին այդ միջամտությունը զայրացրեց, բանն հասավ այնտեղ, որ նա ապտակեց Անժելային: Ծովինարն ու Անժելան դառնացած տուն վերադարձան: Ճանապարհին Ծովինարն ասում էր, որ իրենց հասցրած վիրավորանքը կուլ չի տա և Հայկի հետ այլևս ընկերություն չի անի:

— Սակայն մի քանի օր անց,— պատմում է Անժելան,— ընկերուհիս ու Հայկը փողոցում իմ դեմ դուրս եկան: Հանդիպումից խուսափելու ոչ մի հնարավորություն չկար: Ստիպված բարևեցի ու անցա: Չգիտեմ ինչ զգացին նրանք, բայց ինձ համար այդ հանդիպումը ապտակից ավելի ծանր էր:

Ի՞նչ կասեք դուք այս պատմության մասին: Ի՞նչ կպատասխանեք Անժելային: Ինչպե՞ս կգնահատեք նրանցից յուրաքանչյուրի վարմունքը:

## ԱՆՍՊԱՍԵԼԻ ԱՎԱՐՏ

Ցածր դասարաններից սկսած՝ Հայաստանն ընկերություն էր անում մի համադասարանցի տղայի հետ: Այդ ընկերությունը օգտակար էր երկուսի համար էլ: Մի քանի առարկաներից Հայաստանն էր

ուժեղ, մի քանիսից՝ Թևոսը: Տարիներ շարունակ այդ ընկերության շնորհիվ երկուսն էլ լավ էին սովորում:

— Բայց անցյալ տարվա մայիսին,— պատմում է Հայաստանը,— քննական մի քանի առարկաների իմ մշակումները արել ու հարցերը նախապատրաստել էի, Թևոսը եկավ, օգտվեց, արտագրեց ու գնաց: Սպասում էի, որ նա էլ իր գրածը կտա ինձ: Սակայն Թևոսը խուսափեց հանդիպումներից: Ես կարծում էի, թե այդ ամենն անցողիկ բան է և նա իր ընկերական պարտքը կկատարի, բայց սպասածն էր անհասանելին:

— Այս ուսումնական տարվա սկզբին մեր դասարանը նոր տղա էր եկել,— շարունակում է Հայաստանը:— Նա նստում էր Թևոսի ետևի նստարանին, իսկ ես՝ առջևի: Դասի ժամանակ իմ անունը լսեցի: Մտածելով, որ որևէ բան են հարցնում, շրջվեցի ետ: Եվ ահա, այդ ընկեր կոչված Թևոսը առանց երկար-բարակ մտածելու բարձրաձայն ասաց. «Ի՞նչ ես սիրահարվել վրաս ու անընդհատ ինձ ես նայում»: Այնքան անսպասելի ու խորն էր վիրավորանքը, որ չգիտեի, թե ինչ անեմ:

Այս պատմությունը ձեզ ի՞նչ է ասում:

## ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅՈՒՆ

Զրույցի գրեթե բոլոր մասնակիցների կարծիքով տղաների ու աղջիկների ընկերությունը մեծ մասամբ լավ է անդրադառնում նրանց առաջադիմության և վարքի վրա: Այդպիսի ընկերները ձգտում են լավ սովորել, աշակերտական կյանքին ակտիվ մասնակցել և օրինակելի վարք ունենալ: Իսկ եթե այդ ընկերությունը խզվում է, մեծ մասամբ վատ է անդրադառնում նրանց ուսման, հասարակական կյանքին ու կազմակերպվող միջոցառումներին մասնակցելու վրա: Այդպիսի մի օրինակ բերեց Մանյան: Իրենց դասարանցի Տաթևիկն ու Արտակը մոտիկ ընկերներ էին և քանի դեռ միասին էին, շատ լավ էին սովորում: Բայց անցյալ տարի խզվեց նրանց մտերմությունը, Արտակը հիմա մտերմություն է անում մի ուրիշ աղջկա հետ: Այդ նոր ընկերությունը լավ բան չտվեց նրան: Դասամատյանում նրա անվան դիմաց «երկուսներ» ու բացականեր երևացին: Իսկ նոր ընկերությունը կարճ տևեց, որովհետև Արտակը այդ ընկերուհուն փոխարինեց մեկ ուրիշով: Տաթևիկի առաջադիմությունը շատ չվատացավ, բայց մինչև օրս էլ նա ցավ է ապրում: Արտակն էլ Թևոսի նման ինքնահավան է, կարծում է, թե բոլոր աղջիկները սիրահարված են իրեն:

Սրանց մասին ի՞նչ կասեք:

*Թևավոր խոսքեր*

## ԵՐԿԴԵՄ ՅԱՆՈՒՍ

Հռոմեական առասպելաբանության մեջ այսպիսի աստված էլ կա: Ճիշտ է, սկզբում նա համարվում էր լատինների երկրի՝ Լացիումի հինավուրց արքան, որ ամենազոր Սատուրնից ստացել էր անցյալը և ապագան պարզորոշ տեսնելու ձիրք: Հենց այս երկակի ընդունակության համար էլ Յանուսին նկարում են երկու դեմքով՝ դեպի ապագան նայող երիտասարդ դեմք և դեպի ետ, անցած ժամանակների խորքը նայող ծեր դեմք: Հետագայում, ինչպես լեգենդների շատ հերոսներ, նա կամաց-կամաց վերածվում է սկիզբն ու վերջը խորհրդանշող երկդեմ աստծո: Իբրև ռազմական ձեռնարկումների հովանավոր, Յանուսը ուներ տաճար, որի դռները բացվում էին միայն պատերազմն ըսկըսվելուց հետո. խաղաղ ժամանակ նրանք ամուր փակվում էին: Բայց Հռոմի դարավոր պատմության ընթացքում, մինչև մեր ժամանակները, այդ դռները փակվել են միայն երեք անգամ:

Մենք վաղուց ենք մոռացել Յանուս աստծո արժանիքների մասին: Երբ մեկնումեկի մասին ասում ենք «երկդեմ Յանուս», մենք ուզում ենք ասել կեղծավոր, երկերեսանի մարդ:

## ԴԵՈՒՍ ԷՔՍ ՄԱՔԻՆԱ
(Deus ex machina)

«Դեուս» — լատիներեն նշանակում է «աստված», «էքս» — «ից», իսկ «մախինա» — «մեքենա»: Ի՞նչ միտք է արտահայտում «աստված (դուրս եկած) մեքենայից» բառերի այս կապակցությունը:

Սա բացատրել կարող են հին թատրոնի պատմաբանները միայն:

Հույների և հռոմեացիների թատերական ներկայացումների մեջ հաճախ գործողությունն այնպես էր խճճվում, որ դա ոչ մի կերպ ինքնիրեն չէր լուծվում: Այդ ժամանակ հատուկ սարքերի միջոցով երկնքից կամ գետնի տակից բեմի վրա հայտնվում էր այս կամ այն «աստվածը», որը և լուծում էր հարցը՝ հակառակ գործողության բնական ընթացքի:

Հենց սա է «աստված (դուրս եկած) մեքենայից»: Այժմ մենք այսպես կոչում ենք դրամայի կամ վեպի հերոսի ամեն մի անբնական վիճակ, որ հորինվում է գործողության ապիկար հյուսված հանգույցը քանդելու համար:




## ՁԿԱՆ ՆՄԱՆ

Այսպիսին է Ավստրալիայի հյուսիսարևելյան փոքրիկ քաղաքներից մեկում բացված կենդանաբանական թանգարանի նշանաբանը: Թանգարանում ցուցադրվում են մարդու համար վտանգավոր ծովային կենդանիներ և բույսեր: Դրանցից ամենասարսափելին կորը մեղուզան է, որին անվանում են նաև ծովային իշամեղու, չնայած նրա շոշափուկի երկարությունը երբեմն հասնում է 12 մետրի: Բավական է, որ մարդը թեթևակի դիպչի նրա շոշափուկին, անմիջապես ջղաձգումներ է ունենում և մահանում: Նրման վախճան է ունենում նաև կորալների մեջ ապրող շատ ձկների հետ հանդիպումը, մարդը մահանում է մկանների դաժան ցավերից կամ խեղդամահ է լինում: Ավստրալիայի ափամերձ շրջաններում կան ջրային օձեր, որոնց թույնը անզգույշ լողորդներին մահ է պատճառում 10-40 վայրկյանի ընթացքում: Լողափերում, քարերի տակ կամ ճյուղերից կախված են լինում ծովից դուրս նետված սարդեր, որոնց խայթոցը չնայած մահացու չէ, բայց մարդու արյան շրջանառությունն է խանգարում և մի ամիս անկողնում գամում: Անվիճելի է, թե ինչքան օգտակար է թանգարանը, որտեղ մասնագետները ծովում անվտանգ մնալու հրահանգներ են տալիս:

## ԱՄԵՆԱՈՒՐԱԽ ԹԱՆԳԱՐԱՆԸ

Սան-Ֆրանցիսկո քաղաքի համալսարանում է գտնվում ամենաուրախ թանգարանը: Այստեղ հավաքված է այն ամենը, ինչ ծիծաղ ու ժպիտ է պարգևում մարդուն, զվարճալի երգեր, անեկդոտներ, ծաղրանկարներ, խաղալիքներ և այլն: Այնուհանդերձ, թանգարանի գլխավոր խնդիրը անբան այցելուներին զվարճացնելը չէ: Այն գործում է գիտական հիմնարկի իրավունքով, ուր բժիշկների մի մեծ խումբ ուսումնասիրում է ծիծաղի բարերար ազդեցությունը մարդու օրգանիզմի վրա:

## 3500 ՏԱՐԲԵՐ ՑՈՒՑԱՆՄՈՒՇ



Արևմտագերմանացի ինժեներ Հերբերտ Վալմանը Քյոլնում ստեղծել է էլեկտրական լամպերի թանգարան: Նա՛ կարողացել է հավաքել և՛ ամենաառաջին, և՛ ամենավերջին, ժամանակակից լամպերը, որ եղել են աշխարհի 45 երկրներում: Ամենափոքր լամպը ցորենի հատիկի չափ է և նախատեսված է էլեկտրոնային սարքերի համար: Ամենամեծ լամպը 50 սմ տրամագիծ ունի, օգտագործվում է մեծ կինոստուդիաներում:

## ԱԿԱՄԱ ԹԱՆԳԱՐԱՆ

Հռենոսի ափին գտնվող քաղաքներից մեկում ստեղծվեց մի թանգարան, որի բացումը տեղական իշխանությունները թույլատրեցին որոշ տարակարծություններից հետո: Դուք մտնում եք մի համեստ շինություն և տեսնում ձկնորսության սովորական գործիքներ, ուռկան, ցանց, կարթ, լողան: Սպորտային իրերի բոլոր խանութներում այս ամենը կա, նույնիսկ ավելի նոր ու գեղեցիկ: Այդ դեպքում, ինչո՞վ են ուշագրավ ցուցանմուշները: Շատ քիչ բանով, և այդ էլ տխրության տեղիք է տալիս, ձկնորսները իրենց գործիքները հանձնել են թանգարան, քանի որ արտադրական թափոնները այնքան են աղտոտել Հռենոսը, որ ձուկ չի մնացել:

## ՊԱՆԴՈԿ, ՈՐՏԵՂ ՀՆԱՐԱՎՈՐ ՉԷ ՃԱՇԵԼ

«Ֆորտունա» անունով այդ պանդոկը գտնվում է Բուդապեշտի արվարձանում: Այստեղ հնարավոր չէ ճաշել, բայց ամեն ինչ կարելի է իմանալ վերջին 300 տարվա հունգարական և եվրոպական խոհարարական արվեստի մասին: Այս անսովոր թանգարանում 16 հազար իրերի հավաքածու կա, խոհանոցային պիտույքներ, ամաններ, հին կահույք, ճաշացուցակներ, ընտիր կերակուրներ պատրաստելու բաղադրագրեր, նշանավոր խոհարարների դիպլոմներ: Այս ամենը հետաքրքրություն է ներկայացնում

# ԹԱՆԳԱՐԱՆՆԵՐ



ո՛չ միայն զբոսաշրջիկների, ազգագրագետների ու խոհարարների համար, այլև նկարիչների, որոնք սրճարաններ ու ռեստորաններ են ձևավորում հին ոճով:

## Ա՜Յ ՔԵԶ ԳԱՆՁ

Հարավսլավացի Լ. Սորվակը աշխարհում միակ մարդն է, որ կարողացել է թանգարան ստեղծել՝ իր դաշտում գութանով վար անելու շնորհիվ: Նրա ցուցանմուշներին կարող է նախանձել ցանկացած գիտական հիմնարկություն: Իզուր չէ, որ Նովի Սադ քաղաքի պատմության թանգարանի աշխատակիցները Սորվակի տան սենյակներից մեկը անվանում են իրենց թանգարանի մասնաճյուղ: Քսան տարվա ընթացքում, վար անելիս, Սորվակը գտել է անտիկ մետաղադրամների, այդ թվում՝ հազվագյուտ համարվող, մի հարուստ հավաքածու: Նրա տանը կարելի է տեսնել հռոմեացիների, սարմատների, կելտերի, Բալկաններում բնակվող առաջին պավոնացիների կավե անոթներ: Սորվակը ունի նաև նեոլիթ դարաշրջանի քարե կացիններ ու բրոնզե առարկաներ, որոնք պատրաստվել են չորս հազար տարի առաջ:

## ԱՄԵՆ ԻՆՉ ՋՐԻ ՈՒԺԻ ՄԱՍԻՆ

Իր տեսակի մեջ միակ այս թանգարանը վերջերս բացվել է ԳԴՀ-ում և գտնվում է Զաալե գետի ափին, այժմ չգործող էլեկտրակայանի շենքում: Տեղը պատահական չէ ընտրված. ՀԷԿ-ը աշխատել է մոտ 75 տարի: Ներկայումս շենքում ցուցադրվում են բազմաթիվ մակետներ, որոնք պատմում են մարդու կողմից ջրի էներգիայի օգտագործման մասին՝ սկսած անտիկ շրջանից և վերջացրած Սիբիրի վիթխարի հիդրոէլեկտրակայաններով: Այստեղ կարելի է տեսնել եգիպտացիների ջրանիվը, միջնադարյան ջրաղացներ և ժամանակակից տուրբիններ ու հետաքրքիր սարքեր, որոնք չափում կարգավորում են ջրի հոսանքները:

## ՆՐԱՆՔ ՀԱՎԱՔՈՒՄ ԵՆ

Փարիզի դեկորատիվ արվեստի թանգարանում բացվել է ցուցահանդես՝ «Նրանք հավաքում են» նշանաբանով: Մասնավոր հավաքածուների ցուցադրումը ապացուցեց, որ հավաքել կարելի է բացարձակապես ամեն ինչ. ռեստորանի ճաշացուցակներ, մետրոյի տոմսեր, թութակների խրտվիլակներ, կոկոսյան ընկույզներ և նույնիսկ հակագազեր: Հավաքածուներ են լինում, որոնք մարմնավորում են չիրականացած երազանքները: Մի տիկին, որը երբեք չի հեռացել Փարիզից, հավաքում է աշխարհի բոլոր վայրերի ավազների նմուշներ:

*Թարգմ. ԳՐԻԳՈՐ ՄԱՆՈՒԿՅԱՆ*



# ԻՆՉՊԻՍԻՆ ԿԼԻՆԻ ԱՊԱԳԱՅԻ ՔԱՂԱՔԸ

Մեր առաջին նախահայրերը ունեցել են մի առաջնակարգ և կարևորագույն հոգս՝ ապրելու համար ապահով, գուցե և, գեղեցիկ բնակատեղի գտնել, իսկ հետո, հազարամյակներ անց, նաև կառուցել:

Պարզ է նաև, որ սկզբնական շրջանում ստեղծված բնակավայրերը չեն ունեցել քաղաքաշինական որևէ սկզբունք, կառուցվել են տարերայնորեն: Առանձին-առանձին կամ խումբ-խումբ խրճիթների անկանոն դասավորությունը ստեղծել է բնակավայր, որը իր կառուցվածքով բավարարել է որսորդությամբ կամ ձկնորսությամբ զբաղվող մարդկանց ցեղերին:

Մարդկության զարգացման հաջորդ շրջանու բնակավայր հասկացությունն ավելի է ընդարձակվում և մոտենում է քաղաքի այժմյան մեր պատկերացմանը: Սկսում են ծնունդ առնել քաղաքաշինական նախագծերի առաջին օրինակները, որոնք, ի վերջո, դառնում են իրականություն՝ Հռոմ, Աթենք, Պոմպեյ քաղաքների ստեղծմամբ: Այս քաղաքները տարբերվում էին իրենց նախորդներից նրանով, որ բացի բնակելի տներից, ունեին բազմաթիվ հասարակական նշանակության շենքեր, պաշտամունքի կառույցներ: Եվ որպես կանոն քաղաքը տարածվում էր բարձր պարիսպով շրջապատված միջնաբերդի շուրջը:

Արհեստների և առևտրի զարգացումը նոր անհրաժեշտ տարրեր մտցրեց քաղաքի կազմության

մեջ: Առաջ եկան տարբեր հրապարակներ, շուկաներ, իսկ ավելի ուշ նաև արտադրական մանր կետեր՝ մանուֆակտուրաներ:

Միջնադարի քաղաքները աչքի էին ընկնում փողոցների խիտ ցանցով: Մադրիդ քաղաքի մի ծայրից մյուսը գնում էին ոտքով կամ էլ օգտվում էին տրանսպորտային «համեստ» միջոցներից: Ավանակների կամ ձիերի համար ոչ մի նշանակություն չուներ ծուռումուռ նեղ փողոցների ցանցը, որտեղ մոլորվելը առանձնապես դժվար չէր:

Քաղաքաշինությունը հազարամյակների ընթացքում ենթարկվել է բազմաթիվ փոփոխությունների, որոնք կապված են եղել գիտության և տեխնիկայի, արվեստների և արհեստների զարգացման հետ:

XIX դարը մարդկությանը ավտոմեքենա տվեց: Մեքենաները պահանջեցին լայն ու երկար փողոցների ցանց:

Մեր ժամանակներում կառուցվող քաղաքները մի բարդ օրգանիզմ են ներկայացնում, որի ղեկավարումը օրեցօր դժվարանում է: Դարասկզբին սկսվեց բնակչության հոսքը գյուղից քաղաք, խոշոր արդյունաբերական կենտրոններ ստեղծվեցին: Այդ, ինչպես և բնակչության աճը, նոր խնդիրներ դրեցին քաղաքաշինարարների առջև: Չէ՞ որ քաղաքները մեծանալով կարող են ամբողջ երկիրը ծածկել իրենց միապաղաղ ու անհրապույր բետոնե մարմնով և ճանապարհների ու փողոցների խճճված կծիկով: Կարող են ծածկել: Իսկ մի՞թե տեղ-տեղ արդեն չեն ծածկել: Նյու-Յորքի և Տոկիոյի նման քաղաքները, որտեղ բնակվում է մոտ 15 մլն մարդ, զբաղեցնում են հսկայական տարածություն: Պատկերացնո՞ւմ եք մարդկանց վիճակը, որոնք տնից դուրս գալու պահից ընկնում են երկնաքերներով շրջապատված, մեքենաներով և ստորգետնյա անցումներով լեցուն, բնության հետ քիչ կապ ունեցող այնպիսի հսկա օրգանիզմի մեջ, ինչպիսին է ժամանակակից գիգանտ քաղաքը: Մինչդեռ մարդը՝ բնության մասնիկն է: Բնությունը իր խաղաղ, կանաչ հանգստությամբ անհրաժեշտ է մարդուն օրվա ծանր ռիթմը և կյանքի նյարդային, լարված վիճակը թոթափելու համար:

Քաղաքների աճը կանգնեցնելու համար կատարվել են բազմաթիվ փորձեր: Օրինակ, ստեղծվեցին քաղաք-արբանյակներ, որոնք կառուցվեցին խոշոր քաղաքների շրջակայքում և առնչվում են նրանց հետ ավտոմոբիլային ճանապարհով: Այս արբանյակները հիմնականում կազմված են բնակելի տներից և ունեն փոքր հասարակական կենտրոն, փաստորեն խոշոր քաղաքներում աշխատողների համար հանդիսանալով «ննջարան»: Քաղաք-արբանյակները հետզհետե ձեռք բերին ինքնուրույնություն, հետևաբար քիչ էին օգնում մեծ քաղաքի աճը կասեցնելուն:

Իսկ ինչպիսի՞ն կլինի ապագայի քաղաքը: Առաջարկները բազմաթիվ են:

Ֆրանսիացի ճարտարապետ Պոլ Մեյմոնը առաջարկում է քաղաքը կառուցել ջրի վրա: Ճապոնացի ճարտարապետ Կենզո Տանգեն առաջարկում է մի նախագիծ, ըստ որի Տոկիոն տարածվելու է ծովածոցի վրա: Շվեյցարացի Վալտեր Իոնասը առաջարկում է կառուցել ձագարաձև քաղաք, այս-

## «ՀԱԶԱՐ ՈՒ ՄԵԿ ՀԱՐՑ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ»

*«ՊԻՈՆԵՐ» N 4*

### Պատասխաններ

*1. Գիշերը և ցերեկը Հյուսիսային և Հարավային բևեռներում նշանավոր են նրանով, որ նրանցից ամեն մեկը տևում է վեց ամիս։ Այսինքն՝ թե՛ Հյուսիսային բևեռում և թե՛ Հարավային բևեռում տարեկան լինում է մեկական գիշեր և մեկական ցերեկ։*

*Հյուսիսային բևեռում արևը ծագում է մարտի 21-ին, այսինքն՝ գարնանային օրահավասարին, իսկ մայր է մտնում սեպտեմբերի 23-ին, այսինքն՝ աշնանային օրահավասարին։*

*Հարավային բևեռում պատկերը հակառակն է՝ իշխում է անընդհատ բևեռային ցերեկը, որը սկսվում է սեպտեմբերի 23-ին և վերջանում մարտի 21-ին։*

*2. Հյուսիսային դիրքի շնորհիվ Լենինգրադը ամառները ունենում է այսպես ասած «սպիտակ գիշերներ»։ Արևը մայր մտնելուն պես, կիսալույսը այստեղ տևում է մինչև կեսգիշեր և անմիջապես միանում արշալույսին, առանց գիշերային միջանկյալի։ Այստեղ «սպիտակ գիշերները» իշխում են համարյա ամբողջ ամառը։ Սկսվում են մայիսի կեսերին, վերջանում օգոստոսի սկզբին։*

*3. Ֆրանց Իոսիֆ արշիպելագի Ռուդոլֆ կղզում, որտեղ չորս և կես ամիս, այն է՝ ապրիլի 11-ից մինչև սեպտեմբերի 2-ը անընդհատ ցերեկ է, նույնքան էլ գիշեր է՝ հոկտեմբերի 15-ից մինչև փետրվարի 28-ը։ Տարվա մնացած ժամանակը տեղի են ունենում արևածագ և մայրամուտ։ Մայրամուտի օրերին է եղել Ֆրանց Իոսիֆ արշիպելագում Նանսենը և իր ընկեր Յոհանսենը։ Հենց այդ ժամանակվան է նվիրված Նանսենի «Խավարի և սառույցների մեջ» գիրքը։*

*4. Մուրմանսկում ամառային ցերեկը տևում է երկու ամիս, քանի որ մայիսի 26-ից մինչև հուլիսի 20-ը արևը մայր չի մտնում հորիզոնի տակ։ Ինչպես հայտնի է, Մուրմանսկը Սովետական Միության ձկնորսության և ձկնարդյունաբերության կարևոր կենտրոն է, ունի մոտ 400 հազար բնակիչ։ Մուրմանսկը չսառչող նավահանգիստ է, որ հասնում է Գոլֆստրիմ հոսանքը։*

ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ

*(Աշխարհագրագետ)*





պես հիմնավորելով իր առաջարկը. «Պետք է պահպանել երկրի մակերեսի բնական վիճակը, հնարավորին չափ լավ կազմակերպելով տրանսպորտի և հետիոտն շարժումը: Սրան կարելի է հասնել, զբաղեցնելով քիչ հողային տարածություններ կառուցապատման համար, միաժամանակ շատ մարդկանց ապահովել բնակարանով»: Ճապոնացի Խոսակին առաջարկում է քաղաք-ծառի նախագիծ, ըստ որի մի հսկայական ուղղաձիգ բնի վրա կախվելու են բնակարաններ, խանութներ և այլն: Ինչպես տեսնում եք, այս քաղաքը ամբողջությամբ կտարածվի օդում և հողից կզբաղեցնի ընդամենը իր բնին հավասար մակերես, ներքևում թողնելով հարուստ անտառներ, պտղատու այգիներ, գետեր, լճեր: Կան քաղաքաշինարարներ, որոնք առաջարկում են քաղաքի որոշ տարրերը կառուցել գետնի տակ:

Հետաքրքիր մտքեր՝ քաղաք օդում կախված, ջրի վրա կամ էլ գետնի տակ:

Հարցի տեխնիկական կողմից բացի, կա նաև հոգեբանականը: Կարելի՞ է արդյոք մարդուն համոզել, որ նա ապրի օդում կախված կամ գետնի տակ: Արդյո՞ք լավ կզգան իրենց այդ քաղաքների բնակիչները: Արևալույսին ծագող արևի փոխարեն՝ էլեկտրական լամպեր կամ անտառի փոխարեն՝ անծայրածիր օդային տարածություն:

Հուսանք, որ վերջ ի վերջո, մեզ մեր ամուր հողից չբաժանելու ելք կգտնվի: Հարազատ ու ամուր հողից:

*ԱՐՄԵՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ (ճարտարապետ)*

---

## *«Պիոներ»-ի փոստից*

Արձագանքում են IX պատասխանը նամակին

### ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԸՆԹԵՐՑՈՂ «ԸՆԿԵՐՈՒԿԻՆ»

Ցավով կարդացի խմբագրությանը գրած քո նամակը: Կարդացի ու հիասթափվեցի, որովհետև 9-րդ դասարանում սովորողն չգիտի հայերեն գրել, չգիտի մայրենի լեզուն: Ենթադրե՞նք «անգետիկ», դու իսկապես օգնության կարիք ունես, բայց ոչ թե քո «ճույրերին», այլ՝ ճամակիդ կոպիտ սխալներ:

Դու ավելի շուտ պետք է մտածես ոչ թե Անահիտի ու Արտաշի հասցեն չիմանալու համար, այլ՝ նրա համար, որ գրում ես սխալներով ու անգրագետ:

Աշխատիր գրագետ գրել ու խոսել, և քեզ համար հեշտ կլինի ոչ միայն ընկերներ գտնել, այլև նրանց պահպանել, որովհետև նման «անգետիկից» կհեռանան բոլորը, հասցե չթողնելով նրա մոտ:

*ՄԻՆԱՍՅԱՆ ԳՈՀԱՐԻԿ*
*Երևան, N 114 դպրոց, 6-րդ դասարան*

Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ



№ 5 մայիս 1976 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*նկ. ԷԴՎԱՐԴ ԱՐԵՎՇԱՏՅԱՆԻ*

---



«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 08549: Պատվեր 341: Տպաքանակ՝ 76906: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 6/V 1976 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։

